*Ագաթանգեղոսի Պատմության հունարեն նորահայտ խմբագրությունը (Վարք), թարգմ, հունարեն բնագրից Հ. Բարթիկյանի, առաջաբան և ծանոթ. Ա» Տեր-Ղևոնդյանի, Էջմիածին, 7, 8, 9-10 (1966)—*



# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀՈՒՆԱԿԱՆ ՆՈՐԱՀԱՅՏ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (ՎԱՐՔ)

Թարգմանություն հունարեն բնագրից՝ Հ. ԲԱՐԹԻԿՅԱՆԻ
Առաջաբան և ծանոթագրություններ՝ Ա. ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆԻ

*Հայագիտության ամենաշատ ուսումնասիրված բնագավառներից է ագաթանգեղագիտությունը։ Ժամանակի ընթացքում Ագաթանգեղոսի Պատմության բազմաթիվ և բազմալեզու խմբագրություններ են մեզ հասել։ Այսուհանդերձ հայագիտության այս ճյուղը միշտ հղի է անակնկալներով և ցնցող նորություններով, որոնք անհրաժեշտություն են ստեղծում լրացումներ կատարելու։*

*Մեր միջնադարյան պատմագրության առաջին երկը համարված Ագաթանգեղոսի Պատմությունը դեռես ԺԸ դարում ունեցավ մի քանի խմբագրությունների հրատարակություններ։ Դարի սկզբին լույս տեսավ հայկական բնագիրը[1], իսկ դարի կեսերին հունարեն և լատիներեն խմբագրությունները[2]։ Վերջիններիս հրատարակիչ Հ. Ստիլտինգը քննարկման ենթարկելով այս երկը տարակուսանք էր հայտնել պատմական տեղեկությունների հավաստիության հարցում, որին հակաճառեց Մ. Չամչյանը իր Հայոց պատմության[3] մեջ։*

*ԺԹ դարում իրար հաջորդեցին այլևայլ լեզուներով գոյություն ունեցող խմբագրությունների լույս ընծայումը[4] և հունական խմբագրության քննական հրատարակությունը Պ. դը Լագարդի [6] ձեռքով։ Դարի վերջում արդեն ամբողջ մենագրություններ[6] նվիրվեցին Ագաթանգեղոսի Պատմության բազմաթիվ հարցերի պարզաբանմանը։*

*Սակայն այս բոլոր խմբագրությունները պտտվում են նույն կենտրոնի շուրջը. նրանք բոլորն էլ մեզ հասած միակ հայկական բնագրի թարգմանությունը կամ համառոտումներն են։*

*Ագաթանգեղոսի Պատմության մեզ հասած հայկական բնագիրը իր արմատներով հասնում է Ե դար։ Մոտավորապես երկու դար հետո նա թարգմանվել է հունարեն, որից հետո նրա սկզբում կցվել է Արտաշրի ապստամբության մասին փոքրիկ հատվածը։*

[1] *Գիրք վիպասանութեան որ կոչի հոմանունակի Ագաթանգեղոս, ...Յամի... ՌՃԺԹ ... ի քաղաքիս Կոստանդնուպոլսոյ... ձեռամբ Գրիգորի դպրի որդւոյ Մկրտչի Մարզուանեցւոյ։*

[2] Acta Sanctorum, Septembris, t. VIII. Antverpiae, 1762.

[3] Մ. Չամչեան, *Պատմութիւն Հայոց, Ա., Վենետիկ, 1784, էջ 668—679։*

[1] *Տե՛ս՝* Հ. Աճառյան, *Հայկական մատենագիտություն, Երևան, 1959, Ա., էջ 174—183։*

[5] Agathangelus und die Akten Gregors von Armenien, Göttingen, 1887.

[6] A. v. Gutschmid. Agathangelos, Leipzig. 1877:

Բ. Սարգսեան, *Ագաթանգեղոս և իւր բազմադարեան գաղտնիքն, Վենետիկ, 1890։*

Հ. Տաշեան, *Ագաթանգեղոս առ Գեորգայ ասորի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց, Վիեննա, 1891։*

*Սրանից մեզ հասել է մեկ ամբողջական ձեռագիր (Ֆլորենցիայի Լավրենտյան մատենադարան VII—25)։ Հունական թարգմանությունը Ժ դարում ամփոփվել է Սիմեոն Մետափրաստեսի ձեռքով և մտցվել հունական Հայսմավուրքի մեջ։ Ինչպես այժմ հայտնի է վերջինս թարգմանվել է վրացերեն և այլ լեզուներով։ Ագաթանգեղոսի հունական թարգմանությունից է ըստ երևույթին օգտվել Գևորգ Ասորին, որը 714-ին գրած իր թղթում տալիս է Գրիգոր Լուսավորչի գործունեության համառոտ նկարագրությունը։ Հունականից է ծագում նաև լատինական համառոտ խմբագրությունը, որը կատարվել է ԺԲ դարում։ Այս բազմալեզու խմբագրություններն առանց բացառության առնչվում են այն հայկական բնագրին, որը կրում է «Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց» խորագիրը[7]։*

*Ագաթանգեղագիտության մեջ արմատական հեղաշրջում էր Նիկողայոս Մառի կողմից 1902 թվականին արաբական խմբագրության հայտնաբերումը, որի հրատարակումը և ուսումնասիրությունը[8] պարզեց մի չափազանց կարևոր հանգամանք՝ որ մեզ հասած հայկական բնագիրը միակ խմբագրությունը չէ, որ գոյություն է ունեցել Հայոց դարձի նյութի շուրջը։ Ն. Մառը իրավացիորեն ենթադրում է, որ նորահայտ արաբական խմբագրությունը պետք է թարգմանված լիներ հունարենից, որն իր հերթին պիտի ունենար մի հայկական մեզ չհասած բնագիր օրինակ։*

*Բազում նոր կռահումների և եզրահանգումների առիթ տվեց արաբական խմբագրության հայտնաբերումը։ Լուծելու համար սրա և մինչ այդ հայտնի բազմալեզու խմբագրությունների փոխհարաբերությունը, Ն. Մառը մի ամբողջ տեսություն ստեղծեց։ Ըստ նրան, Ե դարում եղել է Ագաթանգեղոսի առաջին խմբագրությունը Մեսրոպ Մաշտոցի ձեռքով կազմված։ Սա թարգմանվել է հունարեն, որից օգտվել է Գևորգ Ասորին 714 թ. և ապա կորել է։ Երկրորդ խմբագրությունը կազմվել է քաղկեդոնական հայերի միջավայրում, որը թարգմանվել է հունարեն և ապա արաբերեն։ Վերջինս նրա (Մառի) ձեռքով հայտնաբերված խմբագրությունն է։ Ը դարում հակաքաղկեդոնական հայ ազգային եկեղեցին կազմում է երրորդ խմբագրությունը, հենց այն, որ մեզ հասել է իր հայկական բնագրով և հունարեն թարգմանությամբ և այլն։*

*Ընդունելով հանդերձ երեք խմբագրությունների գոյությունը, Ն. Ադոնցը[9] որոշ ուղղում է առաջարկում Ն. Մառի մշակած տեսության մեջ։ Նա չի ժխտում, որ Մեսրոպ Մաշտոցը կարող էր մշակած լինել Գրիգոր Լուսավորչի մասին գոյություն ունեցող վարքագրական և այլ կարգի նյութերը որպես՝ Վարք Գրիգորի։ Բացի դրանից նա հավանական է գտնում, որ նույնանման աշխատանք կարող էր կատարած լինել նաև Կորյունը։ Սակայն երկրորդ խմբագրությունը նա համարում է Է դարի սկզբին ապրած Եղնակ Երեցի աշխատանքը, որը ըստ Ադոնցի վերախմբագրել է ոչ միայն Գրիգորի վարքը, այլև Մաշտոցի վարքը (Կորյունի)։ Անկախ խմբագրող մատենագրի անձնավորությունից, Ն. Ադոնցը երկրորդ խմբագրությունը համարում է Զ դարի վերջի և Է դարի սկզբի գործ, քանի որ հայ նախարարությունների և եկեղեցական թեմերի (եպիսկոպոսությունների) ցուցակներում տարբերություն կա մեզ ծանոթ հայկական բնագրի և արաբական խմբագրության միջև, ընդ որում երկրորդի մեջ այս ցուցակները համապատասխանում են Զ դարի վերջի իրադրությանը։*

*Ն. Մառի ենթադրությունը այն մասին, թե անկասկած պիտի եղած լինի այս խմբագրության հունական օրինակը հաստատվեց, երբ բելգիացի հայագետ և քրիստոնյա արևելքի ականավոր գիտակ պրոֆ. Ժ. Գարիտտը հրատարակեց իր հայտնաբերած հունական նոր խմբագրությունը։ Համեմատելով այս խմբագրությունը արաբականի հետ Ժ. Գարիտտը այն եզրակացության հանգեց, որ արաբականը հունականի թարգմանությունն է որոշ շեղումներով հանդերձ։ Հունական նորահայտ խմբագրությունը ոչ միայն բանասիրական մեծ արժեք ունի, այլև տալիս է պատմական նոր տվյալներ, որոնք պակասում են մեզ ծանոթ հայկական բնագրի մեջ և նույնիսկ արաբական խմբագրության մեջ, թեև վերջինս հիմնականում նրանից է թարգմանված։*

*Այսպիսով մինչև այժմ հայտնի բոլոր խմբագրությունները բաժանվում են երկու հիմնական խմբի. Ա խումբը մեզ հասած հայկական բնագրի՝ բուն Ագաթանգեղոսի Պատմության տարբերակներն (հունական թարգմանություն[10], Մետափրաստյան օրի-*

---

[7] *Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց, աշխատութեամբ Գ. Տէր Մկրտչեան և Ստ. Կանայեանց, Տփղիս, 1909։*

[8] Н. Марр, Крещение Армян, Грузин, Абхазов и Аланов святым Григорием (Арабская версия). С. Петербург.1905.

[9] Н. Адонц. Армения в эпоху Юстиниана Спб, 1908.стр. 341-342.

[10] *Այժմ մեր ձեռքի տակ է նաև այս հունականից կատարված արաբերեն ձեռագիր թարգմանությունը։*

նակ և այլն) են։ Բ խումբը մեզ չհասած հայկական բնագրի հունական և արաբական թարգմանություններն են։ Այս խմբագրությունը Ժ. Գարիտտի և ապա Ն. Ակինյանի կողմից մկրտվել է որպես «Վարք»։

Նորահայտ խմբագրության գրչագիրը գտնվում է Իսպանիայի Էսքուրիալի մատենադարանում և 1107 թվականն է կրում[11]։ Պարունակում է սրբերի վարքեր, ճառեր, քարոզներ և այլն։ Ըստ Ժ. Գարիտտի նյութի այս խայտաբղետությունն է, որ Էսքուրիալի ձեռագրացուցակում նշված «Մարտիրոսութիւն սրբոյն Գրիգորի» անունը խանգարել էր կռահելու նրա արժեքը, թեև գրչագրի հենց ժամանակը պետք էր հետաքրքրություն արթնացներ բանասերների մեջ։

Ձեռագրի հիշատակարանում կա գրչի անունը՝ Լեոնտիոս, որը արտագրել է այն Սիկիլիա կղզու Ս. Փիլիպպոս վանքում։ ԺԶ դարում նա արդեն հիշվում է Էսքուրիալի ձեռագրերի մեջ։ Գրչագիրը հիմնականում մագաղաթից է (բացի վերջին թղթե թերթերից, որոնք ԺԶ դարից են) և ինչպես ասվեց կրում է 1107 թվականը։ Ս. Գրիգորի վարքը զբաղեցնում է 241բ—262ա երեսները։

Դժվար է ասել, թե որտեղի՞ց և ի՞նչ ճանապարհով այս գրչագրի մայր օրինակը հասել է Սիկիլիա։ Հայտնի չէ թե արաբական տիրապետության շրջանո՞ւմ (Թ—ԺԱ դդ.) էր Սիկիլիա բերվել, թե նորմանների նվաճումից հետո։

Ձեռագրի լեզուն անպաճույճ է և հունարենի թարգմանիչը բոլորովին չի ջանացել մեռած մատենագրական լեզվի կանոններին հավատարիմ մնալ, առատորեն օգտագործելով ռամկաբանություններ։ Ուստի դժվար է խոսել առանձին լեզվական շեղումների մասին, քանի որ ռամկաբանությունները գերիշխում են[12]։

Հունական նորահայտ վարքի հատուկ անունների քերականության և ոճի ուսումնասիրությունը բերում է այն եզրակացության, որ սա հայկական մի կորած բնագրից է թարգմանված։ Հայ մատենագրությունը ոչ միայն վերցրել է օտարներից, այլև որոշ բան ինքն է հաղորդել միջնադարյան աշխարհին։

Ժ. Գարիտտը հատուկ գլխի տակ նշում է հունական Վարքի հայկաբանությունները։ Կան բազմաթիվ ոճական ձևեր, որոնք հատուկ չեն հունարենին, բայց երբ նկատի ենք առնում համապատասխան հայկական ձևերը պարզ է դառնում թե ինչքան շատ է թարգմանիչը (որն ըստ Ժ. Գարիտտի հույն պետք է լիներ). ենթարկվել հայկական բնագրին։ Սա առավել ևս ցայտուն է դառնում հատուկ անունների փոխադրման ժամանակ, երբ հայկական Մոկաց, Տայոց ձևերի հոլովական (հոգնակի սեռական) վերջավորության վրա ավելանում է հունականը։

Հունական Վարքի սկիզբը թեև պակաս թերթեր չունի, այնուամենայնիվ առաջին հայացքից երևում է, որ արվեստական է։ Ժ. Գարիտտը իրավացիորեն ենթադրում է, որ թարգմանիչը կամ այլ ոք կրճատումներ են կատարել։ Արաբական Վարքի գրչագրի առաջին թերթերը պակասում են և շատ հետաքրքրական կլիներ, եթե մենք այս խմբագրության՝ Վարքի բուն սկիզբը իմանայինք։ Դժբախտաբար հունական Վարքը նույնպես այս հարցում մեզ չի օգնում։ Այստեղ չկան ոչ միայն հայկական Ագաթանգեղոսի առաջաբանի և հունական Ագաթանգեղոսի սկզբնական հատվածի (Արտաշրի ապստամբության) նյութերը, այլև պակասում է նույնիսկ այնպիսի հիմնական մաս, ինչպիսին է Խոսրովի և Տրդատի պատմությունը։ Ն. Ակինյանի այն վարկածը[14], թե Արտաշրի ապստամբության մասին հունական Ագաթանգեղոսին կցված առեղծվածային հատվածը իր ժամանակին այս Վարքի կրճատված մասից է հանվել՝ կարիք է զգում ավելի ուժեղ փաստարկների։

Սակայն հունական Վարքի կողմնակի ակնարկներից պարզվում է, որ Խոսրովի և Տրդատի պատմության հատվածը նախապես եղել է նրա սկզբում։ Տրդատն ու Գրիգորը զրույցի ընթացքում հիշեցնում են իրենց հին հարաբերությունները։ Դիոկղետիանոսին գրած նամակում Տրդատը հիշում է, որ ինքը դաստիարակվել է հռոմայեցիների մոտ, իսկ Գրիգորը՝ քրիստոնյա Կեսարիայում։ Կեսարիո Ղևոնդիոս արքեպիսկոպոսին գրած նամակում Տրդատը հիշում է իր հին մեղքերը և Գրիգորի մարտիրոսությունը, ինչպես նաև այն, որ ինքը եղել է Լիկիանոսի մոտ։ Այս բոլորի (ինչպես նաև այլ հետքեր)[15] հստակ կերպով ցույց են տալիս, որ այս բաժինը իրոք եղել է և միայն հետագայում է կրճատվել։

Հունական Վարքն սկսում է Գրիգորի մարտիրոսության բաժնով, որի սկիզբը նույնպես

---

11 G. Garitte, Documents pour l'étude du livre d'Agathange, Citta del Vaticano, MCMXLVI, p. 156 - 161.

13 Documents, p. 162—164.

13 Documents, p. 337.

14 Ն. Ակինեան. *Արտաշիր Բաբականի վէպը յունարէն Ագաթանգեղոսի մէջ և Ս. Գրիգորի Նորագիւտ յունարէն վարքը, Հանդէս ամսօրեայ, 1947, էջ 567—581։*

15 Documents, p. 279—283.

կրճատված է։ Այս բաժինը մեծ մասամբ հակիրճ է և այդ տեսակետից տարբերվում է Հայկական և Հունական Ագաթանգեղոսից և նույնիսկ արաբական Վարքից, թեև հունարեն և արաբերեն վարքերն ունեն միայն իրենց հատուկ առանձին գծեր։ Գրեթե նույն վիճակում է նաև Հռիփսիմեանց նահատակության բաժինը։

Պատմական տեսակետից Հունական Վարքի կարևոր հատվածներից է Գրիգոր Լուսավորչի կնոջ (Յուլիտտա հայ. Յուդիտայ) մասին պատմող բաժինը։ Հայկական Ագաթանգեղոսը չի խոսում նրա կնոջ մասին, այլ շատ հակիրճ և լակոնական ոճով ասվում է, որ Տրդատ թագավորին տեղեկացրին, թե Գրիգորը «մինչ դեռ ի մանկութեան արտիսն էր զինուորութեամբ՝ ամուսնացեալ և երկուս որդիս ստացեալ»[16]։ Նույնիսկ արաբական Վարքը չունի այս հատվածը։ Գրիգորի կնոջ մասին խոսվում է ավելի ուշ շրջանում։ Կապադովկիայում ստացած նրա ուսման մասին խոսելիս հիշվում է, որ նա «Իբրև եղև երկոտասանամեայ այր ոմն աստուածապաշտ, որ կոչէր Դաւիթ, ամուսնացուցանէ զնա ընդ դստեր իւրում, որ կոչիւր Մարիամ։ Արդ, իբրև եղէն նորա երկուս որդիք, անուն անդրանկին Վրթանէս և կրտսերոյն Ռստակէս մայրն եմուտ ի վանս կանանց...»[17]։

Ամենայն հավանականությամբ Ե դարի իր նախնական ձևի մեջ հայկական Ագաթանգեղոսն ունեցել է Գրիգորի կնոջ մասին վերոհիշյալ հատվածը, սակայն ժամանակի ընթացքում, երբ կուսակրոնության գաղափարը ավելի և ավելի է արմատացել, այդ հատվածը խորթ է թվացել և կարիք է զգացվել ջնջել այդ տողերը։ Հազիվ թե Հունական Վարքի թարգմանիչը կամ խմբագրողը իրենց երևակայությունից հնարեին Գրիգորի կնոջ հատվածը, քանի որ միջնադարում սրբի կին ունենալու փաստը հավասարապես խորթ էր ոչ միայն Հայաստանում, այլև բնականաբար հունական միջավայրում և ամենուրեք։

Հաջորդ բաժինների մեջ (Հայոց դարձը, Ս. Գրիգորի ձեռնադրությունը, Կոստանդին կայսեր մոտ այցելությունը և այլն) Հունական Վարքը ցույց է տալիս իր ինքնուրույնությունը։ Որոշ դեպքերում նա ավելի մանրամասն է, քան Հայկական և Հունական Աղաթանգեղոսը, իսկ այլ տեղերում ընդհակառակը՝ համառոտ։ Ընդհանրապես եթե համեմատենք Հայկական ու Հունական Ագաթանգեղոսը Հունական ու արաբական Վարքերի հետ կտեսնենք որ առաջինների հետ համեմատելիս Հունական Վարքն ավելի ինքնուրույն է, քան արաբականը, որը համեմատաբար մոտ է կանգնած Հայկական Ագաթանգեղոսին։

Այսպիսով, վաղ միջնադարում եղել է մի հայկական Վարք, որը մեզ չի հասել։ Սա հունարեն է թարգմանվել մի հույն թարգմանչի ձեռքով, ապա որոշ մասերում կրճատվել և դարձել ինքնուրույն խմբագրություն։ Վերջինս թարգմանվել է արաբերեն, որը նույնպես ինքնուրույն է, քանի որ բառացիորեն չի համընկնում հունականի հետ։

Հունական Վարքի հայտնաբերումը հնարավորություն ընձեռեց Ժ. Գարիտտին իր մանրակրկիտ ուսումնասիրությունը ավարտելուց հետո, վերանայել[18] Ն. Մառի տեսակետները և արաբական Վարքի հրատարակման առթիվ նրա առաջարկած տեսությունը։

Նորահայտ Հունական Վարքը հաստատում է Ն. Մառի այն ենթադրությունը, թե իր հայտնաբերած արաբական խմբագրությունը պետք էր թարգմանված լիներ հունականից, իսկ վերջինս էլ իր հերթին՝ հայկականից։

Սակայն Մառի այն տեսակետը, թե այս խմբագրությունը (Վարքը) քաղկեդոնական միջավայրում է կազմվել, Ժ. Գարիտտի մոտ տարակուսանք է առաջացնում։ Ձեռագրի Սինայի ուղղափառ վանքում գտնվելը կամ թերթերի վրացական համարակալում ունենալը բոլորովին էլ չէին կարող ապացուցել նրա քաղկեդոնական ծագումը[19]։ Ն. Մառի այն վարկածը, թե Հայոց, Վրաց, Լազերի և Աղվանից հիշատակումը որպես մեկ ամբողջություն, Է դարի խզումից հետո կարող էր ընդունելի լինել միայն քաղկեդոնիկ հայի կողմից, նույնպես բավարար կռվաններ չունի։ Իսկ ինչու չենթադրել, որ հայկական կորած բնագրի հեղինակը չի ուզեցել այսպիսով շեշտել հենց Հայաստանեայց եկեղեցու գերակշռությունը մյուս Կովկասյան եկեղեցիների նկատմամբ։ Գրիգոր Լուսավորչի տեսիլքի մեջ սպիտակ ոչխարների հոտից սևերի անջատումը Մառը համարում էր հակաքաղկեդոնականներին ուղղված ակնարկ։ Սա ևս շատ անորոշ փաստարկ է, քանի որ նույնը հիշվում է նաև Հայկական Ագաթանգեղոսի մեջ։

Տարակուսանք է առաջացնում նաև Տայքի միջավայրի մասին Ն. Մառի վարկածը, որի կռվաններից մեկը որոշ տեղանունների մեջ

16 Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, 1909, էջ 449։

17 Պատմութիւն Տարօնոյ, Երևան, 1941, էջ 72։

18 Documents, p. 338—350.

19 Ի դեպ նույն ուղղափառ վանքում վերջերս հայտնի դարձավ նաև արաբական թարգմանությունը հենց Ագաթանգեղոսի պատմության, որը Ն. Մառի կողմից համարվել էր հայ ազգային եկեղեցու հակաքաղկեդոնական խմբագրություն։

վրացական ձևով (աթ) վերջածանցների առկայությունն է։ Նորահայտ հունական խմբագրության մեջ համապատասխան տեղերում այդ տեղանունները նույնպես ունեն նման վերջավորություններ և այն էլ հունարենի համար շատ օրինաչափ ձևով։ Մառը հենվում էր նաև Աղձնիք տեղանվան փոխարեն նախարարների ցուցակում արաբական Վարքի մեջ Արտանուջ անվան գոյության փաստի վրա։ Սակայն հունական նորահայտ խմբագրության մեջ նույն տեղում գրված է 'Αρτανῆς, որը Աղձնիքի հունական ձևն է։ Հետաքրքրական և կտրուկ է այս հարցում Ն. Ադոնցի դեռ իր ժամանակին հայտնած տեսակետը, որ Արտանուջ ارطنوج ձևը համարում էր սոսկ գրչական սխալ և առաջարկում էր կարդալ Արզանուն ارزنون որը շատ հավանական է։

Հունարեն Վարքի հայտնաբերումը և ուսումնասիրումը մեծ նշանակություն ունեցավ ագաթանգեղագիտության համար, մանավանդ մեծ չափով պարզվեց «Վարք» կոչված խմբագրության էությունը։ Մառի հայտնաբերած արաբական Վարքը և նրա ուսումնասիրությունը առաջին վճռական քայլն էր այս հարցում։ Երկրորդ և կարևոր քայլը արվեց Ժ. Գարիտի հունարեն Վարքի լույս ընծայմամբ և նրան առընթեր փայլուն ուսումնասիրությամբ։ Հայագիտությունն այժմ սպասում է Վարքի հայկական բնագրի հայտնաբերմանը[21]։

Վարք և վկայաբանություն. Մեծ Հայքի սուրբ և փառավորյալ Գրիգորի վկայի[1]

(Πράξεις καὶ μαρτύριον τοῦ ἁγίου καὶ ἐνδόξου ἱερομάρτυρος Γρηγορίου τῆς Μεγάλης 'Αρμενίας)

*1. Այն ժամանակները, երբ Մեծ Հայքում թագավորում էր Տրդատը, տեղի էր ունենում քրիստոնյաների մեծ հալածանք։ Թագավորն ասում է սուրբ Գրիգորին, երբ (վերջինս) ներկայացավ նրան. «Ո՛վ, ով Գրիգոր. դո՛ւ մատուցիր աստվածներին և կլինես մեր սիրելին, ինչպես նախկինում»։ Իսկ սուրբ Գրիգորն ասում է թագավորին. «Ո՜վ թագավոր, ես այդ չեմ անի, չեմ սպասարկի կուռքերին, ոչ էլ մեռելներին որևէ գո՛հ կմատուցեմ»։*

*2. Թագավորն ասում է. «Երբ դու իմ մոտ եկար ասացիր, որ Հայոց աշխարհի առաջիններից ես, բայց այժմ չի երեում ո՛չ քո ազնվական ծագումը, ո՛չ էլ քո (հիշատակված) երկիրը։ Մեր սիրելին դարձավ անհայտ և անծանոթ մեկը։ Բայց դու ինչպե՞ս չես ուզում սպասարկել աստվածներին, որոնց մենք սպասարկում ենք և չենք դրժում նախնիների սովորությունները»։ Եվ հրամայեց մինչև առավոտ պահել նրան։*

*3. Հաջորդ օրը թագավորը իր մոտ բերել տվեց սուրբ Գրիգորին և ասաց նրան. «Իմանալով օտար երկրում կրած քո տառապանքների մասին, և չմոռանալով ինձ մատուցած քո ծառայությունները, ցանկանում էի վարձահատույց լինել քեզ՝ տալով պաշտոններ և ընծաներ»։*

*4. Գրիգորն ասում է թագավորին. «Աստվածաշունչ գրքերն ասում են, որ պետք է հնազանդ լինել մարմնավոր տերերին. ես, ինչպես դու ասացիր, ամբողջ սրտով ծառայեցի քեզ, բայց պետք չէ կենդանի Աստուծո փոխարեն պաշտել ու պատվել ուրիշին։ Միայն նա՛ է տերը մարդկանց և հրեշտակների, որոնք հավիտյանս փառավորում են նրա անճառելի մեծությունը, որովհետև նա՛ է հիմնադրել երկիրը, նա՛ է մարդուն կերտել, որպեսզի հանապազորդ կատարի նրա պատվիրանները և պաշտի նրան, որպեսզի ամեն մի շունչ, որ գտնվում է երկնքում, երկրում և ծովում փառավորի արարչին և կենարարին»։*

*5. Տրդատը զայրացած ասաց. «Իզուր էին ինձ համար կրած քո տառապանքները։ Քո ազատությունը փոխարինելու եմ բանտով, պաշտոններդ՝ անարգանքով, իսկ նվերների և երջանկության փոխարեն՝ կապանքներ եմ տալու և ապրելու հույսը կտրող վճիռ, եթե չփութաս երկրպագել մեր աստվածներին, նախ և առաջ մեծ Արտեմիսին[22], որ մեծագույն փառք և կյանք է պարգևում մեր ազգին։ Հենց ինքը Դիոկղետիանոս կայսրը, որ աստվածներին է պաշտում, տիրում է ամբողջ աշխարհին»։*

*6. Գրիգորը պատասխանում է նրան. «Ես իզուր չեմ համարում իմ կրած տառապանքները, որովհետև ես դրանով՝ ըստ սուրբ գրքի՝ ենթարկվեցի երկրային տիրոջ, որպեսզի դրա համար վարձահատույց լինեմ կենդանի Աստծուց տեսանելի և անտեսանելի ամենայնի արարչից, ով և պատվիրեց այդպես անել։ Ես չէի մտածում ստանալ քեզանից անցողիկ նվերներ, երբ առկա են հավիտենական բարիքները»։*

*7. «Երբ դու ինձ սպառնում ես անարգանքով, բանտով և մահով, դու դրանով [հավիտենու...*

[20] Н. Адонц, Армения в Эпоху Юстиниана стр. 293 (*ծանոթ. 3*)։

[21] *Վերջերս Օքրիդայում (Մակեդոնիա, Հարավսլավիա) Ս. Գրիգորի մի հունական Վարք հայտնաբերվեց* F. Halkin, Manuscripts byzantins d'Ochrida, Anal. Boll., t. 80. fasc. 1—2, 1932), *որը մասամբ համապատասխանում է Ագաթանգեղոսի Պատմությանը, իսկ մասամբ արաբական Վարքին* (G. Garitte, La vie grecque inédite de S. Grégoire d'Arménie, Anal. Boll., t. 83. f. 3—4, 1965) *Այս խառնածին բնագիրը՝ Օքրիդայի Վարքը, Ագաթանգեղոսի երկու խմբագրությունների միջև միացման օղակ է կազմում։*

[1] *Թարգմանությունը կատարվել է Ժ. Գարիտի հրատարակած հունարեն բնագրից. տե՛ս* G. Garitte, Documents, p. 23-116։

[2] *Հայ հեթանոսական աստվածությունների անունները հունարեն են թարգմանված։ Այսպես՝ Անահիտ=Արտեմիս, Տիր—Ապոլոն, Բարշամին=Հոեա, Արամազդ=Զևս, Նանե—Աթենաս, Միհր=Դիոնիսոս, Աստղիկ=Աֆրոդիտէ* (Documents, p. 129)։

կան] կյանք ես նախապատրաստում, մոտեցնում ես Քրիստոսին, մեր Աստծուն, ճաշակելու հավիտենական Աստծո հետ լինելու մշտնջենական ուրախությունը, որի թագավորությանը և բարիքներին վերջ չկա։ Երբ դու ինձ ատիճանների փոխարեն մահ ես նախապատրաստում, ապա դու ինձ ուղարկում ես հրեշտակային կյանք վարելու կապանքների մեջ նետելով, դու ինձ երանություն ես նախապատրաստում, հաղորդակից դարձնելով Քրիստոսի կապանքներին, որը չարչարանքներ և կապանքներ կրեց մեզ համար։ Ես հրճվում եմ Տիրոջ փառքի ներկայությունից։ Դու կարծում ես, թե զրկում ես ինձ քեզ հետ լինելուց, բայց նախապատրաստում ես հավատքի հոր Աբրահամի և բոլոր արդարների հետ լինելու մեծ հաճույքը։ Սպանելով ինձ մահով, դու ինձ կյանք ես տալիս՝ մոտեցնելով Քրիստոսին, որից բոլոր արդարները հավիտենական կյանքի հույսեր ստանալով, ծառայում են կենդանի Աստծուն։ Դուք զոհ մատուցելով մեռելներին և անշունչ կուռքերին, անկյալ եք հավիտենական կյանքից. դուք մեռյալ եք։

8. «Իսկ Արտեմիսը, որին մեծ աստված ես անվանում, անշունչ լինելով քո հոգին տանում է դեպի հավիտենական դժոխք, առանց որևէ օգուտ տալու քեզ։ Դուք պատվելով ոսկե, արծաթե և քարե արձանները, ձեզ եք անպատվում, որովհետև ունենալով հոգի, մեռյալներին եք սպասարկում։ Այդ նյութերը Աստված տվեց՝ մարդկանց պետքերի համար, իսկ դուք կուրորեն պաշտում եք դրանք, անգիտանում եք ձեր սեփական կորուստը։ Իսկ ես կերկրպագեմ և կպաշտեմ ամեն ինչի արարիչ Աստծուն և Որդուն, ով Հոր հետ միասին ամեն ինչ ստեղծեց, և սուրբ Հոգուն կենարարը»։

9. Թագավորն ասում է Գրիգորին. «Արդյոք ինչպիսի՞ն է ձեր կյանքը, ո՞վ է Քրիստոսը, ի՞նչ է Սուրբ Հոգին, որի մասին խոսում ես։ Ասա կարճ։ Բայց ես չեմ ների այն անարգանքները. որ դու ուղղեցիր աստվածների հասցեին, որ դու ապականելի և անշունչ համարեցիր անմահներին։

10. Գրիգորն ասում է. «Ես ո՞ւմ անարգեցի արդյոք, ո՛վ թագավոր. ասում ես, թե քո աստվածներին, որոնք զուրկ են որևէ զգայարանից։ Չէ՞ որ ձեր հույսը արձանների վրա է։ Իսկ մենք ճշմարիտ Աստված՝ ճշմարիտ Աստծուց՝ Քրիստոսին ենք խոստովանում, որը մարմին ստացավ մե՛զ համար, չարչարվեց խաչի վրա և մահացավ, իսկ հարություն առնելով մեզ անմահություն շնորհեց, ով գալու է հատուցելու յուրաքանչյուրին ըստ նրա արարքների, արդարներին՝ հրճվանքը դրախտի և երանությունը իր թագավորության, իսկ հանցավորներին և ամբարիշտներին՝ դժոխքը հավիտենական, քանզի նրանք չցանկացան ճանաչել արարչին ամենայնի»։

11. Թագավորն ասում է. «Ինչքան անարգանք, որ թափեցիր աստվածների վրա, այդքան չարչարանքների դառնությունը պիտի ճաշակես, որովհետև դու խորշում ես ամբողջ Հայաստանին բարիքներ պարգևող մեծ Զևսից ու Արտեմիսից և նրանց մեռյալ անվանում»։

12. Այն ժամանակ նա հրամայեց բարձր կախել սրբին, բերել նրա մարմինը, աղ ցանել ու բացախ թափել։ Եվ թշվառականը հրամայեց, որ այդ ամենասարսափելի պատիժը տևի երեք օր։

13. Գրիգորը պատրաստակամությամբ ընդունեց պատիժը։ Նա աղոթում էր, աղերսում աստվածային զորությանը՝ հզորացնել իր թույլ մարմինը և հետևյալ աղոթքն էր ասում. «Ճշմարիտ Աստված, որ անդրանիկ Աստված, Բանով ամեն ինչ ստեղծեցիր ու կազմեցիր և անգոյից գոյության կոչեցիր, շնորհք տուր դիմանալու ամբարիշտ բռնակալի ինձ պատճառածին, որպեսզի (մարդիկ) տեսնելով, թե ինչպես դյուրությամբ եմ տանում ծանր չարչարանքները, դան քո Հոր, քո միածին Որդու և Սուրբ Հոգու իմացությանն»։

14. Թագավորը, տեսնելով սուրբ Գրիգորի տոկունությունն ու պատրաստակամությունը, լցվեց զայրույթով և հրամայեց սրբին կախել մեկ ոտքից, վառել աղբ և թթին ծխարկել, որպեսզի շնչելով այդ գարշահոտությունը, մեռնի։

15. Իսկ սուրբը գոհություն էր հայտնում Աստծուն և ասում. «Շնորհակալություն քեզ, երկնային Աստված, որ ինձ արժանացրիր Քրիստոսի հավատքի համար կապանքների և բազմապիսի չարչարանքների ենթարկվելու։ Քանզի դո՛ւ կերտեցիր մարդուն, որպես քո ձեռքերի ստեղծագործություն սիրեցիր նրան և արժանացրիր բնակվել դրախտի երանության մեջ։ Բայց բանսարկուի խորհուրդը զրկեց (մարդուն) անմահության երանությունից, որը մեզ նորից շնորհեց մեր Աստվածը, Որդին և Բանն Աստուծո, նա ով մարմնացավ մեզ համար, որպեսզի մեր ապականելի մարմինը անապական դարձնելով, ներկայացնի Աստծուն։ Նա համաձայնվեց չարչարվել, որպեսզի մե՛զ փրկի չարչարանքից, որպեսզի միացնի մեզ իր աստվածային (էությանը), լինելով լույս ի լուսո և կյանք ի կենաց, նա, ով ծնվեց անարատ կույսից, նա, ով էր, է և կլինի և կմնա հավիտյանս հավիտենից՝ Հոր և Սուրբ Հոգու հետ»։

16. Երբ նա աղոթում էր այսպես և արտասանում այս խոսքերը մեծ ուրախությամբ, արագագիր դպիրները ամեն մի խոսքը արձանագրեցին, միաժամանակ նշեցին սրբի ջերմեռանդությունը։

17. Տրդատ թագավորը հրամայեց սրբին ներկայանալ իրեն և ասաց նրան. «Դու դեռ շարունակո՞ւմ ես մնալ քո սին գաղափարների մեջ։ Վերադարձի՛ր մեր լավագույն կենցաղավարության և փրկիր քեզ»։

18. Սուրբը պատասխանում է նրան. «Ինձ համար կյանքը դա ապագա (կյանքն) է. հոգու հեռանալը մարմնից՝ անմահություն է, ի՛նչ ուզում ես կատարիր, ո՛վ թագավոր, ավելի արագ հեռացրու (հոգիս) իմ մարմնից մահվան (քո) վճռով։ Ես չեմ կարող այլևս տեսնել քեզ գարշելի կուռքերին երկրպագողիդ»։

19. Թագավորը հրամայեց երկու փայտի կոճղեր բերել և ինչ որ սարքով սեղմել ոտքերը, որ (արյունը) հոսի և ահա մատների ծայրից արյուն կաթեց, կարմիր ներկելով գետինը։ Տեսնելով այդ թագավորն ասաց. «Զրո՞ւմ ես քո հավատքի (խոստացած) կյանքը։

20. Իսկ Գրիգորը պատասխանում է. «Զորություն է տրված ինձ երկնի աստվածային ուժից հաղթող դուրս գալու համար, հարվածելով քեզ՝ բռնակալիդ և քո հորը՝ բանսարկուին»։

21. Թագավորը առավել ևս զայրացավ և հրամայեց դամեր գամել (Գրիգորի) ոտքերին (ներբանների տակ) և քանդելով կապանքները, կարգադրեց թիկնապահներին քաշքշել նրան շատ արագ վազքով և նրա արյամբ ոռոգել փողոցը։ Ու ասում էր ամբարիշտը բարեպաշտին. «Արդյոք դու սա՞ ես անվանում հավիտենական երանություն»։

22. Գրիգորը պատասխանեց. «Սուրբ գիրքը մեզ ավանդել է հետևյալը. «Սերմանի տկարությամբ և յառնէ զորությամբ»[3] և թեև անարգված ենք, բայց կփառավորվենք»։

23. Նա հրաման տվեց նորից ծեծել նրան և հարվածել գլխին, ասելով. «Սա՞ է քո ասած փառքը»։ Իսկ սուրբը պատասխան տվեց և ասաց. «Այո՛». աշխատավորն այն ժամանակ է ստանում իր արդար վաստակը, երբ ամեն ինչ կատարում է իր ճակտի քրտինքով»։

24. Իսկ թագավորը (....)[4] աղ, քացախ և բորակ խառնել և (Գրիգորին) մեջքի վրա պառկեցնելուց հետո եղեգե խողովակով նրա քթանցքին էր հոսեցրել։ Այնուհետև նա հրամայեց տոպրակի մեջ դնել մոխիր, ապա այդ (տոպրակի) մեջ խոթել սրբի գլուխը և վզին կապել, որպեսզի շնչելով բարձրացնի մոխրի փոշին։ Դրանից հետո նա ասաց սրբին. «Ճաշակեցի՞ր ձեր դրախտային կյանքը»։ Իսկ նա պատասխանեց. «Այս մոխիրը անթառամ ծաղիկներից պատրաստված պսակ բերեց ինձ»։

25. (Թագավորն) այնուհետև հրամայեց գետնին ցցիվ տալ երկաթե տատասկներ, ապա մերկացնել սրբին և քարշ տալ, որպեսզի գետինը արյամբ ողողվի։ Թագավորը զարմանում էր, թե ինչպես էր նա շարունակում կենդանի մնալ, որ այսքան օրեր ամենատարբեր չարչարանքների էր ենթարկվել։ Ապա հրամայեց կապար հալեցնել և թափել նրա ամբողջ մարմնի վրա, գուցե այդ կերպ կկարողանար սպանել նրան։

26. Բայց սուրբը այդ պատիժն էլ արիությամբ ընդունեց, փառաբանելով Աստծուն, ով նրան կարողություն տվեց դիմանալու ծանր պատիժներին։ Հաջորդ օրը թագավորը նրան իր մոտ բերել տալով, ասաց. «Ես ապշել եմ և զայրացել, թե ինչպես դու այսքան տառապանքներ կրելուց հետո, դեռ կենդանի ես»։

27. Իսկ սուրբ Գրիգորն ասում է նրան. «Իմ Աստվածը վերևից զորություն ընձեռեց ինձ՝ պատրաստակամությամբ տանելու պատիժները։ Ես չեմ վախենում հրաժարվելու և ապականության հանձնելու իմ մարմինը, քանզի նա նորոգվելու է, և անապական դառնալու։ Այսպիսի ավետումից արիություն ստանալով, մենք քրիստոնյաներս պահպանվում ենք շնորհիվ Քրիստոսի։

28. Տրդատը վերջին վճիռն արձակեց, հրամայեց նրան շղթայակապ տանել Արտաշատ քաղաքը և նետել վիրապը, որտեղ բազում թունավոր օձեր կային և որտեղ մահապատժի էին ենթարկվում նրանից առաջ (մահապարտները)։ Վիրապը լի էր իժերով և կարիճներով, բայց երբ սուրբն իջավ վիրապը, օձերը մի կողմ քաշվեցին։ Նա սնվում էր Քրիստոսի շնորհքով. քաղաքում ապրող մի բարեպաշտ կին հաց և ջուր էր բերում վիրապը։

29. Սրանից հետո Տրդատ հրաման արձակեց Մեծ Հայքի ամբողջ երկրով մեկ՝ ուղղված կուսակալներին, շահապներին և նախարարներին, որի բովանդակությունը հետևյալն էր. «Իմ իշխանությանը ենթակա կուսակալներին, շահապներին, զորավարներին և ամբողջ ժողովրդին, ողջույն։ Քրիստոնյաների պիղծ դավանանքը հայտնաբերվեց մեզ շատ սիրելի մի էակի մոտ, ես նկատի ունեմ Գրիգորին։ Մենք ամենադաժան չարչարանքների ենթարկելով նրան, վիրապը նետեցինք՝ Արտաշատ քաղաքում և իսկույն սպանեցինք։ Պետք է, որ մենք այդ մասին հայտնեինք ձեզ։ Արդ, հրամայում եմ ձեզ հայտնաբերեք նրանց (քրիստոնյաներին) և կալանավորելով մեզ ներկայացնեք։ Եթե որևէ մեկը նրանց թաքցնի, նրան սպասում է ամենադաժան մահը։ Եթե մենք չխնայեցինք մեզ սիրելի Գրիգորին և այնքան պատիժներից հետո ուղարկեցինք, որ սպանվի օձերի և իժերի կողմից, ես էլ ո՞ւմ կարող եմ խնայել։ Յուրաքանչյուրդ մտքում ունենալով թագավորի երկյուղը, զգոն եղեք. ով կհայտնի նրանց մասին, կարժանանա պարգևների, իսկ ով որ թաքցնի նրանց, կամ այս գործում անզգոնի՝ կպատժվի»։

30. Որոշ ժամանակ անց հռոմայեցիների կայսր Դիոկղետիանոսը (իր) հավատարմագույն մարդկանցից ուղարկեց հռոմայեցիներին հպատակ բոլոր քաղաքները, ասելով, որ գտնեն մեծամեծների դուստրերից ամենագեղեցիկին և իր մոտ բերեն՝ կնության առնելու համար։

31. Այդ գործի համար ուղարկված մարդիկ շրջեցին և կանանց մի մենաստանում հանդիպեցին անբիծ ու սուրբ կույսերի, որոնք շատ առաքինի կերպով քրիստոնյաների հավատքն էին պաշտում։ Սրանց առաջնորդն էր Գայանեն, որը իր մոտ դեռ մանուկ հասակից ուներ հռոմայեցի մի հյուպատոսի դուստր, անունը Հռիփսիմե, որին նա դաստիարակել էր և սովորեցրել աստվածաշունչ գրքերը։ Այս Հռիփսիմեն մյուսների հետ իր կուսությունը նվիրել էր Քրիստոսին. Նա շատ գեղեցիկ էր և իր գեղեցկությամբ գերազանցում էր բոլոր կանանց։ Սրանց սնունդը բաղկացած էր սերմերից, որ թրջում էին ջրի մեջ։

(Շարունակելի)

---

[3] Ա կորնթ. ժե, 43։

[4] Անընթեռնելի բառերի տեղ Ագաթանգեղոսն ունի «Եւ ետ հրաման բերել աղ և բորակ և բարկ քացախ» (էջ 63), իսկ արաբական Վարքը «Եւ ահա հրամայեաց զի բերիցեն քացախ և բորակ» (Մկրտութիւն Հայոց, Վրաց, Աբխազաց և Ալանաց, էջ 3)։



# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀՈՒՆԱԿԱՆ ՆՈՐԱՀԱՅՏ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (ՎԱՐՔ)

Թարգմանություն հունարեն բնագրից՝ Հ. ԲԱՐԹԻԿՅԱՆԻ
Առաջաբան և ծանոթագրութ. Ա. ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆԻ

*32. Կեսարի կողմից ուղարկված մարդիկ տեսնելով և հիանալով Հռիփսիմեի գեղեցկությամբ, գնացին և հայտնեցին կայսեր, իսկ նա պատրաստակամություն հայտնեց ամուսնանալ նրա հետ։ Նա կարգադրեց իր ծերակույտի բոլոր մեծամեծներին պատրաստ լինել կայսերական հարսանիքի առթիվ կայանալիք խնջույքին։*

*33. Այս բանի համբավը տարածվեց ամենուրեք և հասավ մինչև սուրբ կույսերի մենաստանը։ Հռիփսիմեն և Գայանեն տեղեկացան իրենց վրա կատարվելիք հարձակման մասին, քանզի նրանց ազգականներից ոմանք հայտնել էին կեսարի չարամտությունը. Հռիփսիմեն աղոթում էր՝ զրկվել այս կյանքից և անցողիկ փառքից, բայց պահպանել իրեն անարատ և անբիծ Աստուծո համար։ Բոլորը աղոթում ու ասում էին. «Դո՛ւ Աստված, որ բոլորի փրկությունն ես և հույսը, քո մարդասիրությամբ փրկի՛ր մեզ, որպեսզի անաղարտ մնանք, չզրկվենք հավիտենական կյանքից»։*

*34. Բազում այլ (կույսեր) բոլորը աղոթելուց հետո, գիշերով փախուստի դիմեցին և հռոմայեցվոց քաղաքից դուրս գալով նավարկեցին և հասան փոյուգիացվոց երկիրը, այնտեղից էլ հայոց երկիրը և հասան Այրարատ աշխարհը, ուր և հաստատվեցին, իրենց աշխատանքով հոգալով իրենց ապրուստը։*

*35. Իսկ կեսար Դիոկղետիանոսը, անգիտանալով կատարվածի մասին, ամբողջ թագավորական սպասավորությունը ուղարկեց այնտեղ, որտեղ գտնվում էր Հռիփսիմեն։ Նրանք գնացին, և չգտնելով նրան, ձեռնունայն վերադարձան և կայսեր հայտնեցին նրանց փախուստը։ Կեսար Դիոկղետիանոսը շատ տխրեց, ողբաց իր սեփական անմտությունը, որ նա ուղարկված մարդկանց զեկուցումից ու գովեստից անմիջապես հետո գործի չանցավ. նա անգիտանում էր, որ (կույսերին), որպես Աստծուն ապավինած, պահպանում էր աստվածային նախախնամությունը։*

*36. Կայսրն ամենուրեք մարդ ուղարկեց՝ Հռիփսիմեին փնտրելու, յուրաքանչյուր նահանգի կառավարչին գրեց՝ պատժի ենթարկել քրիստոնյաներին։ Իսկ երբ հետո իմացավ, որ (կույսերը) գնացել են Հայոց աշխարհը, Տրդատ թագավորին դեսպաններ ուղարկեց, հետևյալ նամակով.*

*37. «Ինքնակալ կայսր Դիոկղետիանոս առ սիրելի եղբայր թագավոր հայոց Տրդատ, ողջո՜ւյն։ Թող գիտենա քո թագավորությունը մեր նամակից այն մասին, թե ինչ պատահեց մեզ այսպես կոչված քրիստոնյա դավանանքից։ Իբրև թե հրեա կոչվածներից ոմն խաչվեց և այդ մեռյալ մարդուն (քրիստոնյաները) անմահ են անվանում, կոչում որդի Աստուծո և պաշտում այն փայտը, որի վրա խաչվեց. բացի դրանից, նրանք հարգում են բոլոր նրանց ոսկորները, որոնց մենք և մեր իշխանավորները մահվան դատապարտեցինք, իրենց պիղծ դավանանքի համար։*

*38. «Նրանք խորշում են մեր ճշմարիտ դավանանքից, պատրաստակամությամբ են տանում պատիժները, այն աստիճան, որ մեր թրերը բթանում են, իսկ իրենք արիաբար և աներկյուղ՝ սիրով են ընդունում մահվան վճիռները և մոլորվում են հետևելով ինչ որ ուսուցիչների. նրանք անարգում են մեր անմահ աստվածներին, մեծ լուսատուների՝ արևի և լուսնի զորությունը, համարելով այդ խաչյալ Քրիստոս կոչվածի արարչագործությունը։ Բոլոր մարդիկ բաժան-բաժան եղան, և երեխաները հեռացան ծնողներից, կանայք՝ ամուսիններից, ամուսինները՝ կանանցից. Նրանք բոլորին իրենց են ձգում։*

*39. «Սրա վրա ավելացնենք և այն, որ ոմն ազնվական աղջիկ՝ դուստրը հյուպատոսի, հեռացավ հորից և ընդունեց այդ դավանանքը։ Ես լսելով նրա գեղեցկու-*

թյան մասին, որոշեցի երկու բան իրագործել. Նրա հետ ամուսնանալ, և Նրան էլ փրկել պիղծ դավանանքից։ Բայց նա զգալով այդ, իր դաստիարակի և ուրիշների հետ փախավ քո՝ իմ եղբոր երկիրը։ Արդ, դու գտիր Նրան և մեզ ուղարկիր, իսկ մնացածներին, ո՜վ թագավոր, սպանիր։ Սակայն եթե սիրես Հռիփսիմեին, ուրախությամբ քեզ պահիր, քանզի քո ծառայությունը ինձ ցանկալի է։ Ո՛ղջ լեր, սիրելագույն եղբայր և դաշնակից»։

40. Տրդատը պատասխանում է Նրան այսպես. «Տրդատ թագավոր Հայոց Մեծաց առ ինքնակալ կեսար, հռոմայեցվոց կայսր Դիոկղետիանոս։ Մանուկ հասակից ձեզ մոտ մեծանալով և դաստիարակվելով, ապա ղալով հայրենի թագավորությունս, ուրախանալով աստվածներով, որոնք մեր պետության և իմ հպատակների պաշտպանն են, ես խորշում եմ քրիստոնյա կոչվածներից։ Ես նույնիսկ դառնադույն մահվան դատապարտեցի՝ վիրապը գցեցի, ուր բնակվում են օձեր և հոշոտում են այնտեղ նետվածներին, ինձ սիրելի մեկին, ոմն Գրիգոր կապադովկիացու, որը դաստիարակվել էր քրիստոնեական դավանանքի ոգով։ Արդ, տեր արքա՛, քո հրամանը կկատարեմ ջանասիրությամբ և պատրաստակամությամբ։ Ո՛ղջ լեր»։

41. Ուղարկված մարդիկ գտան (կույսերին) և շրջապատելով Նրանց, Տրդատ թագավորին իմաց տվեցին, ինչպես և մանկամարդուհու գեղեցկության մասին։ Թագավորը հրամայեց, որ բազում մեծամեծներ գնան և բերեն Նրան. Նա ուղարկեց նաև ոսկե կառք, որպեսզի Նրան թագուհուն վայել պատիվներ ցուցաբերեն։

42. Առաջնորդուհի Գայանեն արտասվալից խնդրում էր ասելով. «Անցողիկ փառքը չգայթակղեցնի քեզ, ո՜վ դուստր. դու հիշի՛ր հավիտենականի և մնայունի մասին. հիշի՛ր քո ծնողների փառքն ու հարստությունը, որոնք արհամարհելով, քո կուսությունը նվիրեցիր կենդանի Աստծուն։ Անարատ ներկայացիր միածին Որդուն և մեր Աստծուն»։

43. Հռիփսիմեն, այդ լսելով, տարածեց իր ձեռքերը խաչի նմանությամբ և աղոթեց այսպես. «Աստված հզոր, որ մի խոսքով ամեն ինչ ստեղծեցիր, պահպանիր մեզ քո միածին Որդու շնորհքով. դու, որ փրկեցիր Դանիելին՝ առյուծներից և մանուկներին՝ վառված հնոցից, փրկի՛ր և մեզ այս ամբարիշտների ձեռքից, որպեսզի չդառնանք շների ճարակ։ Փայլատակի՛ր քո լույսը ի վերա մեր, որպեսզի մենք անարատ մնանք և արժանանանք ավետման, իսկ նրանք խավարեն, որպեսզի մենք կարողություն ստանանք տանելու այն, ինչ մեզ նրանք պատճառելու են, որպեսզի նրանք ստորանան՝ պարտվելով հզորությամբ պատվական և կենարար խաչի»։

44. Երբ Հռիփսիմեն այդ աղոթքն էր ասում, ահա և վրա հասավ մեծամեծների ամբոխը՝ թագավորական ծիրանիով և ոսկեպատ գահավորակով։ Հռիփսիմեն դիմադրում էր, երբ (երկինքը) որոտաց և բազում պալատականներ մեռան, իսկ որոտի միջից մի ձայն ասաց. «Արիացե՛ք, ես ձեզ հետ եմ»։ Այդ, ինչպես և որոտման մասին հայտնվեց թագավորին և այն մասին, թե (Հռիփսիմեն) չի ուզում գնալ թագավորի մոտ։ (Թագավորը) հրամայեց բռնի (իր մոտ) բերել Նրան. ապա նա տարավ Նրան իր սենյակը և փորձեց բռնությամբ անկողին նետել։

45. Իսկ նա կոչելով ճշմարիտ Աստծուն, պատրաստ եղավ դիմադրելու. Նա պատառոտեց Տրդատի պատմուճանը, գետին տապալեց Նրան. բազում մարտերում և պատերազմներում հաղթողը, պարտության մատնվեց կին էակի կողմից, իսկ սրբուհին մնաց անվնաս ու անպարտելի։

46. Տրդատը հրամայեց բերել Գայանեին, որպեսզի Նրա խորհրդով Հռիփսիմեն տեղի տա և հպատակվի թագավորին։ Նա եկավ և ենթադրելով, որ թագավորը չգիտե հռոմայեցիների լեզուն, ասաց. «Ո՜վ դուստր, հիշի՛ր, ինչ էր քեզ սովորեցնում սուրբ Գիրքը, մտաբերիր այն, ինչ անապական է մնում և այն, ինչ այստեղ ապականելի է. հիշի՛ր անմահ փառքը և պատվո պսակները, որոնք պատկանում են իրենց անբիծ պահողներին»։

47. Թագավորը լսելով այդ, կանչեց ծառաներից մեկին և հրամայեց քարով ջարդել Գայանեի ատամները և վռնդել Նրան։ Երբ թագավորը ընկած էր գետնին, Հռիփսիմեն դուրս եկավ ննջասենյակից և ոչ ոք չկարողացավ Նրան խանգարել։ Գալով իր հետ եղող սուրբ կանանց մոտ, հայտնեց Նրանց ամեն ինչ և այն մասին, թե ինչպես ինքը փրկվեց։

48. Բոլորը միահամուռ կերպով ընդունված գոհանամբ մատուցեցին Աստծուն։

49. Երբ Նրանք դեռ գոհություն էին հայտնում Քրիստոսին, (Հռիփսիմեին) շնորհված կարողության համար, վրա հասան դահիճները։ Նրանք կալանավորեցին և գլխատեցին երեսուներկու սուրբ կանանց. Հռիփսիմեի նախ լեզուն կտրեցին և նա ջանասիրությամբ երկարեց այն, իսկ այնուհետև գետին տապալելով հոշոտեցին։

50. Իսկ Գայանեին և մնացածներին բռնելով, ցցերի վրա կապեցին և մորթազերծ արեցին՝ տիկ հանեցին։ Սպանվածների մարմինները երկար ժամանակ (անթաղ) մնացին և սրբերի մարմինների եղած տեղից բուրմունք էր բուրում. ժողովուրդը զարմանում էր, թե ինչպես գարշահոտության փոխարեն բուրմունք է առաջանում սուրբ և անարատ մարմիններից։ Բոլոր սուրբ կանայք սպանվեցին սեպտեմբեր ամսի քսանվեցին։

51. Տրդատ թագավորը վեց օր ողբում էր Հռիփսիմե կույսի գեղեցկությունը։ Մեծամեծներն այնուհետև խնդրեցին Նրան դուրս գալ սգից և գնալ որսի, որպեսզի որսի հաճույքը ուրախության փոխակերպի թախիծը։ Թագավորը համոզվեց Նրանց խոսքերին և ոսկե կառքի վրա նստած հասավ այն տեղը, որտեղ սովորաբար որս էին անում։

52. Այն ժամանակ, երբ թագավորական ձիերը առաջ էին քաշում կառքը, իսկ հեծյալ և հետիոտն մեծամեծների մի մասը առջևից էր գնում, իսկ մյուսը՝ հետևից, ահա ճանապարհին Նրանց վրա հասավ Աստուծո զայրույթը։ Մի չար ոգի ապտակեց թագավորին և կառքից գետին տապալեց։ Նա ընկնելով գետին, սկսեց մոլեգնորեն ուտել իր ձեռքերը, պատառոտել հանդերձները։ Բաբելոնի թագավոր Նաբուգոդոնոսորի նման նա կերպարանափոխվեց և դեմքով ու էությամբ խոզ դարձավ

և գնաց մարգերը և սկսեց ապրել վայրի խոզերի հետ։ Նրան բռնել (...)[7], քանզի ի բնե ուժեղ էր, այլ նաև այն պատճառով, որ ներգործում էին իր մեջ մտած դևերը։

53. Այդ բանը պատահեց ոչ միայն նրա հետ, այլև թագավորական տան բազում անդամների հետ, զորավարների և զորապետների, քիչ չէին և զինվորները. ոմանք գետին էին ընկնում, ուրիշները լեռներն էին սլանում, մի մասն էլ փախչում էր մարգերն ու անտառները։ Հայոց ամբողջ երկրի վրա մեծագույն (...)[8] կատարվեց։

54. Երեք օր հետո Տրդատ թագավորի քույր Խոսրովիդուխտը երազ տեսավ։ Նա բարեպաշտ էր և տեսավ մի լուսափայլ մարդու, որն ասում էր իրեն. «Ո՛չ թագավորը, ո՛չ էլ մնացածները չեն բուժվի, մինչև որ մարդ չուղարկեք և չբերեք Գրիգորին, որին տասնհինգ տարի առաջ նետեցիք սողունների և օձերի վիրապը, Գրիգորին, որին քո եղբայրը մահվան դատապարտեց։ (Միայն) այդպես դուք կփրկվեք՝ Աստուծո հզորությամբ»։

55. (Խոսրովիդուխտն) արթնացավ, կանչեց նրանց, ովքեր առողջ էին մնացել և ամեն ինչ պատմեց։ Նրանք չհավատացին, որ Սուրբ Գրիգորը կարող է դեռ ողջ լինել և ասացին նրան. «Մենք հնազանդվում ենք քո խոսքերին, բայց չենք կարծում, որ նա կենդանի լինի»։

56. Մեկ օր անց Խոսրովիդուխտի երազը կրկնվեց և նա առավոտյան նորից պատմեց (...), որ մեծամեծներից մեկը գնա Արտաշատ Գրիգորին բերելու։

57. Նրանք ընտրեցին և ուղարկեցին նախարար Օտային։ Վերջինս եկավ Արտաշատ. քաղաքացիները տեսնելով նրան զարմանում էին այդպիսի մարդու գալստյան վրա և չգիտեին նրա ժամանելու նպատակը։ Մեկը մյուսին ասում էր. «Ինչով բացատրել նրա ներկայությունը, ինչ է հրամայել թագավորը»։ Օտան, իջնելով ձիուց, հարցրեց վիրապ գնալու ճանապարհը և ասաց նրանց. «Ինձ ուղարկեց մեծ տիրուհի Խոսրովիդուխտը. Նա տեսիլքի մեջ տեսավ թագավորի վրա հասնելիք պատիժը և այն, թե ինչպես է նրան բուժելու աստվածն»։ Նա մանրամասն պատմեց տեսիլքի բովանդակությունը և բոլոր քաղաքացիները ապշահար եղան։

58. Իսկ բազում քաղաքացիների և իր թիկնապահների ուղեկցությամբ նա շտապ գնաց վիրապը։ Պարանները իրար կցելով վիրապի մեջ կախեցին։ Քաղաքացիներից ոմանք տեսիլքին հավատք չէին ընծայում և ասում էին. «Շատերն են նետվել վիրապը և միայն օձերի սուլոցից իսկույն մեռան. ինչպես կարող է նա տասնհինգ տարի ապրել»։

59. Օտան, մոտենալով վիրապին, բարձրաձայն աղաղակեց. «Գրիգոր, ճշմարիտ մեծ է քո Աստվածը, այն Աստվածը, որ ծանր պատիժներ հասցրեց մեզ, իսկ տեսիլքի մեջ (հայտնվելով) հրամայեց, որպեսզի դու դուրս գաս։ Եթե դեռ կենդանի ես, իմաց տուր, որպեսզի քեզ դուրս քաշենք»։

60. Սուրբ Գրիգորը շարժեց պարանները և դրանով հայտնեց իր կենդանի լինելը. իրեն պարաններով կապելով նա վեր քաշվեց։ Նրա մարմինը վատ վիճակում էր և մազերով էր ծածկված։ Նրան ողջագուրեց Օտան, բերեց փառահեղ հանդերձ և սրբին հագցրեց, ապա ձի նստեցրեց ու շարժվեց առաջ, իսկ նրա ետևից բազում արտաշատցիք։

61. Երբ նրանք մոտեցան քաղաքին և թագավորի քույրն ու մտքով առողջ մնացածներն իմացան, որ Գրիգորը կենդանի է և Օտայի հետ եկել է, զարմացան, բայց միաժամանակ ուրախացան, քանզի պիտի փրկվեին իրենց վրա հասած պատուհասից։

62. Նրանք մեծ ուրախությամբ փութացին սրբին ընդառաջ և հանդիպելով նրան արտաքո քաղաքի, երկրպագեցին։ Դեպի սուրբն էր սլանում նաև կերպարանափոխված թագավորը, ապա և բոլոր դիվահար մեծամեծները, որոնք իրենց կամքից անկախ վազում էին և սրբի ոտքերի մոտ անկապ-անկապ աղաղակներ արձակում և խոսում միմյանց հետ։

63. Սուրբ Գրիգորը բազում արտասուք թափեց և ողբաց նրանց նախկին մոլորությունը, ապա ծունկ դրեց դեպի արևելք, աղոթեց, որպեսզի նրանք փրկվեն փորձանքից և մաքրվելով գան ճշմարտի գիտությանը։ Բոլորի միջից դևերը իսկույն դուրս եկան և բոլորը առողջանալով, ոտքի կանգնեցին և խնդրում էին սրբից ներողամիտ լինել իրենց՝ նրան հասցրած տանջանքների համար։

64. Սուրբն ասաց նրանց. «Ես ուրախ եմ այն բանի համար, որ դուք արեցիք ինձ, քանզի դուք ինձ մասնակից դարձրիք հավիտենական բարիքներին, իսկ դուք էլ մոտով ածեցիք Աստծուն՝ երկնի և երկրի արարչին, երկու լուսատուներով (երկինքը) զարդարողին՝ ցերեկը արևով, իսկ գիշերը լուսնով, փայփլող բազմապիսի աստղերով. նրան, որ ստեղծեց երկիրն ու ծովը, երկիրը, որպեսզի աճեցնի իր բուսականությունը՝ պտղատու ծառեր, բազմապիսի ծաղիկներ և բույսեր, իսկ ծովը, որպեսզի կյանք տա զանազան ձկների։

65. «Ամեն ինչ տեղի ունեցավ Հոր և Որդվո և Սուրբ Հոգու մեկ հրամանով, նրանց միացյալ ներգործությամբ։ Դուք տեսնում եք գեղեցկությունը և մեծությունը երկնքի, տեսնում եք երկիրը, որ մարդկանց և կենդանիների համար սնունդ է տալիս, և ծովը, որ ձկներով բոլորին հաճույք է պատճառում։ Աստված և Որդին Աստուծո, լույս ի լուսո, արարիչն ամենայնի տվեց մարդկանց դրանց հաճույքը, ճանաչել Արարչին և կենդանի Աստուծոն, ստեղծագործին և պարգևողին բարյաց, բարեգործին և մարդասերին, որին դուք անգիտանալով, մոլորվեցիք, ձեռակերտ կուռքերին զո՞ւ

7 Անընթեռնելի բառերն իրենց համապատասխան տեղն ունեն Ագաթանգեղոսի մոտ «Զի թէպէտ կամեցան արգելուլ անդէն» (էջ 113), իսկ արաբական Վարքի մեջ «որք ընդ նմայն էին առի զնա զի դարձուցեն ի քաղաք, բայց ոչ կարացին ընկճել զնա յաղագս ուժոյ նորա...» (Մկրտումթիւն, 26)։

8 Անընթեռնելի տեղում Ագաթանգեղոսն ունի «անհնարին կործանումն ի վերայ աշխարհին հասանէր» (էջ 113—114), իսկ արաբական Վարքը «Եւ ահ մեծ անկաւ ի վերայ Հայաստան աշխարհի» (Մկրտումթիւն, էջ 26)։

մատուցելով և առհավետ կենդանի Աստծուն պաշտողներին չարչարելով։

66. «Այժմ դուք իմացաք, թե ինչքան մեծ է զորությունն Աստուծո, ով փրկեց մեզ ամեն տեսակի պատուհասից և տվեց առյուծներին և օձերին ոտնակոխ անելու կարողություն։ Ես չեմ պարծենում իմ հավատքը մեծարելով, այլ ձեզ ցույց եմ տալիս փառքն ու հզորությունն Աստուծո։ Դուք տեսաք, թե այն սուրբ կույսերը ձեր կողմից ինչքա՜ն տանջանքների ենթարկվեցին, բայց նրանք չհրաժարվեցին դեպի Քրիստոսն ունեցած հույսից ու սիրուց։ Ինչպես սուրբ գիրքն է ասում, նույնիսկ սուրը չի կարող բաժանել մեզ սիրուց Քրիստոսի»։

67. Բոլորը լսում էին նրա խոսքերը և ողբում իրենց գործած չարագործությունների համար։ Բոլորը արցունք էին թափում սրբի ոտքերին և խնդրում բուժել թագավորին, որ դետնին էր գտնվում՝ կերպարանափոխված և անասնակերպ։ Սուրբն աղոթեց նաև թագավորի համար և բոլորին բուժեց, ազատելով նրանց խայտառակ պատուհասից. իսկ (թագավորն) ստացավ իր նախկին կերպարանքը։

68. Սուրբ Գրիգորն սկսեց իր վարդապետությունն, ասելով. «Աստվածաշունչ գրքերի իմաստը, դա երկրայինի արհամարհումն է, սրբի ու լավագույնի մտարերումը և մաքրված մտքով աստվածայինի ու մարդկայինի ճանաչողությունը, բանսարկուի դեմ մղված պատերազմում հոգին անփոփոխ պահպանելը։

69. «Սկսենք Բանի աստվածայնությունից։ Մենք նպատակ չունենք ամբողջ խորությամբ հետազոտել այն և ձեզ վարդապետել, այլ այնքան, ինչքան Աստված կարողություն տա մեր թույլ էությանը։ Աստված իր մարդասիրությամբ ջանալով կուռքերը պաշտելու մոլորությունից վերադարձնել ձեզ աստվածածանոթության, ինձ խոսքի և վարդապետության ուժ է տալիս, որպեսզի ձեզ բացահայտեմ ճշմարտությունը։ Քանզի նա, որ փրկեց ինձ, դուք այդ դիտեք, բազում և ծանր պատուհասներից, ով ինձ վիրապում տասնհինգ տարի անվնաս պահպանեց այնտեղ սողացող օձերից, ինձ կշնորհի ձեզ քրիստոնեական հավատքի մեջ ամրապնդելու այս ծառայությունը, ազատելու ձեզ պիղծ ու ձեռակերտ կուռքերից, որոնք մինչև օրս ձեզ մոլորության մեջ էին պահում։

70. «Դուք համոզվեցիք նրանց վրա հույս դնելու սնոտիության մեջ, տեսաք և մեր փրկությունը։ Ահա նրանք անկարող դուրս եկան, իսկ մենք Աստուծո հույսին ապավինելով փրկվեցինք։ Ես ձե՛զ եմ այդ ասում, որովհետև ուզում եմ, որ ճշմարիտ ճանապարհով ընթանաք. դուք գիտեք, թե ինչպես սուրբ կույսերը, ձեր թրերի զոհը դառնալով, փրկվեցին այս աշխարհից և անմահության արժանացան։

71. «Նա է միակ Աստվածը, ով մշտնջենավոր է և ամեն ինչ լիացնող, ինչպես ասում է սուրբ գիրքը. Տիրոջն է երկիրն իր ամբողջ բովանդակությամբ, Աստված է Հայրը և Բանը մեծածին՝ Որդին Աստուծո և Աստված, ով նրա մեջ է և միշտ նրա հետ, որի համար եղավ ամեն ինչ և առանց նրա եղավ ոչինչ, ինչպես ազդարարում է աստվածաբան Հովհաննեսը. «Ի սկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն։ Նա էր ի սկզբանէ (առ Աստուած)։ Ամենայն ինչ նովաւ եղև, և առանց նորա եղեւ և ոչ ինչ որ եղեն»[9]։

72. «Ահա մենք նրան ենք երկրպագում և նրան ենք փառավորում՝ Հոր և Որդուն և Սուրբ Հոգուն՝ մեկ գոյի և երեք անձնավորության մեջ։ Այդպես ենք քարոզում և մաղթում, որ դուք ևս ամրանաք այդ բանում՝ երկրպագել երրորդությանը աստվածային մեկ գոյի մեջ։

73. «Իսկ դուք ձեր մաքերում մի տարվեք երկրայինով։ Մեկ է ամեն ինչի արարիչ և ստեղծող Աստվածը։ Ականջ դրեք խոսքին իմաստուն մարգարեի, որ ականատես եղավ փառքին Աստուծո. Մովսեսն է այն, որ ասում է. «Ի սկզբանէ արար Աստուած զերկիրն և զերկիր։ Եւ երկիր էր աներևոյթ և անպատրաստ. և Հոգի շրջէր ի վերայ ջուրցս»[10]։

74. «Աստված ստեղծագործում էր Որդու՝ Բանի և Աստուծո հետ. Հոգին կյանք էր շնորհում՝ ջերմություն տալով էնթականերին։ Նա (Աստված) երկնքում ստեղծեց երկու լուսատուներ, (երկինքը) զարդարեց բազմապիսի լուսավոր աստղերով, տալով նրանց գիշեր ու ցերեկ լուսավորելու շնորհը։ Նա սահմանեց տարվա եղանակները՝ ձմեռ, ամառ, գարուն, աշուն։ Նա հաստատեց երկինքը, ստեղծեց հրեշտակների, հրեշտակապետների, քերովբեների, սերովբեների գերմարդկային ուժերը՝ իր աստվածային փառքին ծառայելու համար։

75. «Նա նմանապես երկիրը զարդարեց լեռներով, բլուրներով. ձորերով, ժայռերով, պտղատու և անպտուղ ծառերով, մարգագետիններով, բույսերով, զանազան ծաղիկներով՝ բոլորն ի վայելումն մարդկանց. ստեղծեց նաև ծովը՝ իմի հավաքելով ջրերը և այդ ծով անվանելով. Նա կարգադրեց չանցնել սահմանված վայրերից այն կողմ։ Ծովը Աստուծո կողմից մարդկանց տրված իմաստությամբ նավարկվում է և մարդիկ, ովքեր դեպի հնդկաց աշխարհն են ճանապարհորդում՝ թանկագին իրեր բերելու նրանց, ում ցանկալի է հարստությունը, (ուրիշները Եգիպտոս են գնում), ուղարկողներին պարեն բերելու։ (Աստված) ամեն ինչ ենթարկել է մարդուն բոլորին հաղորդելով իր իմաստությունը, որպեսզի իբրև մարդու արարիչ Աստված և նրան սիրող, ներգրավի աստվածահաճո բարեգործության մեջ։

76. «Բայց այժմ դադարեցնենք այստեղ վարդապետությունն այդ մասին և շտապենք կույսերի սուրբ մարմինները թաղելու և աղոթարաններ կառուցելու։

77. «Ինձ այս գիշեր ջատ զարմանալի տեսիլք երևաց. ինձ երևաց, որ երկինքը խորանակերպ բացվել է և երկնքից անձրև է թափվում երկրի վրա, իսկ Արտաշատ քաղաքի հենց մեջտեղը՝ թագավորական խարիսխ։ Ոսկե խարիսխի վրա հրեղեն սյուն. բոց էր բարձրանում և ամեն ինչ լուսավորում. (սյան) վրա ամպե թակաղակ էր լուսակերպ, իսկ թակաղակի վերևում փայլատակում էր նշանը խաչի։

78. «Սա քաղաքի մեջտեղում էր, իսկ մի այլ տեղում (տեսա) արյան գույնի երեք թագավորական խարիսխ և հրեղեն սյուներ, բայց սյուները ուժեղ (ջարքով) չէին

---

[9] Յովհ. Ա, 1-3։

[10] Ծննդ. Ա, 1-2։

կանգնեցված, այլ մեկը արևելյան կողմում, մյուսը՝ հյուսիսային, իսկ երրորդը՝ արևմտյան կողմում։ Պատվական խաչի նշանը նմանապես երեք սյուների վրա էր երևում և փայլատակում։

79. «Մի հսկա այր, որի դեմքը և մեծությունն անհնար է նկարագրել, ամեն ինչ լցրել էր իրմով։ Նա ձեռքում ուներ ոսկե գուրզ և դրանով խփում էր երկիրն ու լեռները. ժայռերն ու լեռները թնդում էին և ցրիվ գալով հարթության վերածվեցին։

80. «Դրանից հետո հարթության վերածված ամբողջ երկրի վրա (տեսա) ոսկեձև՝ զարդարված սեղաններ և յուրաքանչյուր սեղանի վրա կանգնեցված խաչեր։

81. «Այնուհետև (տեսա) սևագույն (ոչխարների) մի հսկայական հոտ. ոչխարներն ու գառները անցնում էին երկնքից թափվող անձրևի միջով և խսկույն լուսավոր դառնում, նրանց ասրը սպտղում էր։ Բայց մի քանի ոչխար հոտից բաժանվելով նորից նախկին կերպարանքն էին ստանում, նրանք նախկինից ավելի սև էին դառնում և գայլերի վերածվելով հափշտակում էին բազում ոչխարներ և նրանց փոխանցում իրենց գույնն ու էությունը։

82. «Ես այդ տեսա և շատ վախեցա, երբ լուսանման մի այր, բոցե թևերով, ձայն տվեց ինձ և ասաց. «Մի՛ երկնչիր, Գրիգոր. լսի՛ր, ես բացատրեմ քեզ տեսիլքի նշանակությունը. քաղաքի մեջտեղում (տեսածդ) հրեղեն սյան տեղում կառուցվելու է կաթողիկե եկեղեցի. պատվական խաչը, դա հովիվն է, որը վարդապետելու է ժողովրդին, հաստատելով մարդկանց համագո երրորդության հավատքի մեջ։ Արյան գույն ունեցող երեք սյան խարիսխները, դրանք սուրբ կույսեր Հռիփսիմեն, Գայանեն ե նրանց հետ եղողներն են, որոնք մարտիրոսացան, փառքի արժանացան և մեռնելով՝ անմահացան։ Սյուներն իրար ամրացնող երեք շղթաները, դա նրանց հավատքն է, որը համագո երրորդության միջոցով արժանացրեց նրանց հաղորդակից լինել մեր Փրկչի և Աստուծո չարչարանքներին։ Դրա համար էլ նրանց վրա երեք խաչ էր կանգնած, որ նշանակում է մարդկության համար (Քրիստոսի) հանձն առած խաչը, զի մարդիկ ևս Քրիստոսի համար չարչարվելով, հաղորդակից դառնան չարչարանքներին և արժանանան (հավիտենական) կյանքին։

83. Երբ սուրբը պատմեց այդ մասին, բոլորը ապշեցին. Նրանք շտապեցին թաղել սուրբ կույսերին։ Յուրաքանչյուրի համար պատրաստեցին փայտե դագաղ, բերեցին նաև մետաքսե հանդերձներ, մրցելով միմյանց հետ, թե ով ավելի թանկագինը կբերի։ Պալատականները ոսկե և ծիրանուց պատրաստված պատմուճաններ և պատանքներ էին բերում, իսկ այլ մեծամեծներ ուզում էին սրբուհիներին այլ և այլ գույնզգույն հանդերձներ հագցնել։

84. Իսկ սուրբ Գրիգորը գիմեց նրանց հետևյալ ճառով. «Ճշմարիտ Աստված Քրիստոսին, Աստուծո որդուն ընդունելի լինի ջերմեռանդությունը ձեր ե ձեր բարի գործի նորելուկ սկիզբը։ Մի առ ժամանակ ձեր մոտ պահեք այդ (հանդերձները), պահեք դրանք անվնաս, մինչև որ վերածնության լույսի մեջ լինեք, ազատվեք ձեր վրա իշխող խավարից և սուրբ մկրտությամբ դառնաք կաթողիկե եկեղեցու անդամները։ Երբ դուք լույսը զգենաք, այն ժամանակ ձեր գործերով է, որ կ՚զգվեցնեք սուրբ կույսերին։ Իսկ այժմ դուք դեռ պղծված եք՝ կուռքերը (պաշտելու) մոլորությամբ և արժանի չեք մերձենալ սրբությանը։

85. Սուրբն այդ ասելուց հետո, հրամայեց թագավորի ծառաներին չմոտենալ։ Սուրբը մենակ մոտեցավ և դագաղների մեջ գրավ յուրաքանչյուրի սուրբ մարմինը՝ ամեն մեկին իր հանդերձանքի մեջ փաթաթելով,և երկաթե գամերով (գամեց դագաղները)։ Նա հրամայեց դերեզմաններ փորել, որոնց մեջ էր իջեցնում դագաղները։

86. Թագավորը եռանդագին փորում էր, նրա միտքն (արդեն) առողջ էր, իսկ լսելիքը՝ ընդունող վարդապետության։ Թագուհին և թագավորի քույր Խոսրովիդուխտը ևս փութացին միանալ նրանց աշխատանքին և փորված հողն էին տեղափոխում։

87. Տրդատը շատ խնդրեց Սուրբ Գրիգորին, որ դռների մոտ քարե տախտակներ կանգնեցնի, դրանք իր մեջքի վրա տեղափոխելով, որպեսզի վերացվի անճոռնի տեսքը և այդ բանի թույլտվությունն ստանալով, բարձրացավ Մասիս կոչված լեռը և տաշել տվեց տասներկու հսկա տախտակ՝ երեք սուրբ հանգստարան-վկայարանների դամբարանների համար, որտեղ թողվել էին մարտիրոսացած կույսերը։ Յուրաքանչյուր դամբարանին չորս քարից մեկ մուտք կառուցեցին այն քարերով, որոնք թագավորը բերեց իր մեջքի վրա, քանզի նա շատ էր ուժեղ և քաշի այդ կորովի վրա զումարվելով ջերմեռանդությունը առավել ևս հուժկու էր դարձնում նրան։

88. Երեք սուրբ վկայարանները կառուցելուց հետո, Սուրբ Գրիգորը արևելյան կողմում խաչեր կանգնեցրեց, բայց զոհասեղան չկառուցեց, քանզի քահանայության պատիվը չուներ։

89. Նա ծնկի եկավ, ապա բոլորին կարգադրեց ծնկի գալ և արտասվալից աղաչում էր, որ թագավորի անասնական դեմքը մարդկայինի վերափոխվի։ Երբ սուրբն ու ամբողջ ժողովուրդը թագավորի հետ միասին աղոթում էին, թագավորի մարմնի վրայից կարծես թեփուկներ թափվեցին, թափվում էին մազերն ու կճղակները և նա ստանում էր նախկին մարդկային կերպարանքը։

90. Նրանք փառավորեցին Աստծուն, ով մարդասիրաբար փրկեց և դաստիարակեց, գոհություն հայտնեցին համագո երրորդության և հեռացան սուրբ վկաների վկայարանից սուրբ Գրիգորի հետ, որ մարտնչեց հանուն Քրիստոսի և ամբողջ հայ ժողովրդին և երկիրն (հայոց) տարավ դեպի ճշմարիտ աստվածածանոթությունը։

91. Այնուհետև նրանք որոշեցին սուրբ վկայարանները զարդարել քահանայության վիճակն ստացողի ընտրությունից հետո (...)։ Սուրբը կառուցված սուրբ վկայարանների պահպանության ու սպասարկման համար մարդկանց նշանակեց, ռոճիկ սահմանելով թագավորական գանձարանից։

92. Թագավորը, Քրիստոսի մարտիկ Գրիգորի և իրենց համակած ամեն փորձանքներից և ամենաամբարիշտ կռապաշտությունից փրկված բոլոր մեծամեծների հետ

գնաց Վաղարշապատ քաղաքը. այսուհետև նրանք ընթացան բարեգործության և արդարության ճանապարհով։ Տրդատ թագավորը, հասնելով Վաղարշապատ քաղաքը, հրապարակեց թագավորական հրամաններ. նա հրամայեց բոլորին՝ կուսակալներին, շահապներին, նախարարներին և ցեղապետներին հավաքվել թագավորի մոտ՝ Վաղարշապատում։ Գրեց նաև Վրաց և Աղվանից թագավորներին և հայտնեց նրանց այն ամենը, ինչ իրենց հետ պատահեց, և որ պետք է նրանք շտապ կարգով ժամանեն։

93. Այդ միջոցին կատարվածի մասին լսեց Սուրբ Գրիգորի կինը։ Նա (Գրիգորից) երկու որդի ուներ, Արիստակես կոչվածին և Վրթանեսին. այն ժամանակ, երբ սուրբ Գրիգորը չհամաձայնվեց զոհ մատուցել կուռքերին և բանտ նետվեց, կինը պատժի սպառնալիքի տակ իր երկու որդիների հետ միասին փախել էր Կեսարիա քաղաքը՝ ամուսնու ազգականների մոտ։

94. Նա ցանկացավ երկու որդիներին դաստիարակել հոր ոգով. ինքը և երեխաները իրենց կարիքները հոգում էին նոր ձեռք բերած դրամով։ Քիչ օգնություն չցուցաբերեցին նրանց նաև ազգականները, նամանավանդ, երբ լսեցին, որ (Գրիգորը) բազում չարչարանքների ենթարկվեց հանուն մեր Տեր Հիսուս Քրիստոսի։

95. Հետագայում իմանալով կատարվածի մասին, նա թողեց իր երեխաներին դպրոցում և մեկ աղախնի ու երկու ծառաների հետ եկավ Վաղարշապատ քաղաքը։ Հանդիպելով սուրբ այրին, հայտնեց նրան երեխաների խոհեմ լինելու և ստացած դաստիարակության մասին և թե ինչպես ինքը լսել էր սուրբ կույսերի և (Գրիգորի) սխրագործությունները, որոնք վկայում են Քրիստոսի այցելության մասին։

96. Սուրբ Գրիգորը չուզեց լինել նրա հետ, նամանավանդ, որ երեխաները բացակայում էին, բայց և այնպես նրա հանդեպ պետք եղած հոգատարությունը ցուցաբերեց։ Իսկ Տրդատ թագավորը, թագուհին և թագավորի քույրը, իմանալով, որ Գրիգորի կինն է եկել փութացին ողջունել նրան։

97. Սուրբ Գրիգորը ասաց թագավորին. «Ես հանուն Քրիստոսի՝ ճշմարիտ Աստուծո արժանացա կապանքների և փրկվեցի։ Նա (կինը) այլևս չի կարող ինձ հետ լինել, և թող սուրբ կույսերին սպասարկի՝ լինելով քրիստոնյա, թող նա փութա դեպի նրանց վկայարանները և մյուս մկրտված և կնքված ծառաների հետ փառաբանի կենդանի Աստծուն։ Թող նրանք այնտեղ մնան մինչև եկեղեցիների կառավարումը իր վրա վերցնող քահանայի ընտրությունը , քահանայի, որ ձեզ է մկրտելու սուրբ մկրտությամբ»։ Թագավորը և թագուհիները համաձայնվեցին սրբի հետ, պատվելով (Գրիգորի) սուրբ կնոջ, որի անունը Յուլիտտա էր[11]։

[11] Գրիգոր Լուսավորչի կնոջ անունը միայն այս բնագրում է Յուլիտտա (ընդհանրապես Մարիամ անվամբ է ծանոթ)։ Հայսմավուրքում կա Յուղիտա անվամբ մի նահատակուհի, որի անունով եկեղեցի է եղել Ամիդում։ Իբրև կանացի անուն Հայաստանում գործածվել է ԺԵ դարից Ուղիտա ձևով, իսկ ԺԷ դարում շատ է հանդիպում (Հ. Աճառյան, Հայոց Անձնանունների բառարան, Գ, էջ 732—733)։

(Շարունակելի)



# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀՈՒՆԱԿԱՆ ՆՈՐԱՀԱՅՏ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (ՎԱՐՔ)

Թարգմանություն հունարեն բնագրից՝ Հ. ԲԱՐԹԻԿՅԱՆԻ
Առաջաբան և ծանոթագրութ. Ա. ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆԻ

98. Հրավերի համաձայն ներկայացան երեք թագավորները, այն է՝ Լազերի, Վրաց և Աղվանից, ապա հերթականությամբ թագավորներից հետո առաջին տեղում գտնվող Անզեղտան և Անձիտի կուսակալը, երկրորդ՝ Աղձնիքի մեծ բդեշխը, երրորդ՝ Մազքերի կուսակալը, չորրորդ՝ ասպետության իշխանը, որը պաշտպանում էր Կովկասյան լեռների կողմերը և Ճանիքը[13], հինգերորդ՝ Մամիկոնյանների նախարարը՝ սպարապետը, որին էին ենթարկվում Հայոց ամբողջ հեծելազորն ու հետևակը և միշտ Հայոց թագավորի հետ էր լինում և պատերազմում նրա զորավարության էին ենթարկվում բոլոր վերոհիշյալները և նրանք, որոնց մասին խոսք կլինի ստորև. վեցերորդ՝ կուսակալը այսպես կոչված Կորդվաց աշխարհի, որը գտնվում է Անդրիոկորիտների [14] մոտ. յոթերորդ՝ իշխանը, Մեծ Ծոփքի, որը Միջագետքի մոտ է գտնվում, ութերորդ՝ Գուգարացվոց աշխարհի առաջնորդը, որը ես բդեշխի աստիճան ունի։ Իններորդ՝ Ռշտունյաց կուսակալը, տասներորդ՝ Մոկաց շահապը, տասնմեկերորդ՝ Սյունյաց ցեղապետը, տասներկուերորդ՝ Ծավդեից զորավարը. տասներեքերորդ՝ [իշխանն Ուտիացվոց աշխարհի, տասնեչորսերորդ][15] շահապը Զարավանդի և Հեր գավառի. սրանք ես գտնվում են Կորրիտների մոտ. տասնեհինգերորդ՝ Խորխոռունյաց նախարարը, որը որպես առաջնորդ ունի Մաղխազության իշխանությունը, տասնվեցերորդ՝ Արծրունյաց իշխանը։ Մնացած նախարարներն էլ հավաքվեցին՝ ըստ իրենց գրաված հերթականության։

99. Այս տասնվեց մեծամեծները, որոնք մեկ առ մեկ թվարկվեցին և հիշատակվեցին իրենց ունեցած աստիճաններով, հրաման ստացան պատրաստ լինել ճանապարհորդության համար։

100. Երբ բոլորը հավաքվեցին, Տրդատ թագավորն ասաց նրանց. «Ո՜վ թագավորներ, կուսակալներ, իշխաններ, նախարարներ. դուք իմացել եք այս սուրբ մարդու և սուրբ կույսերի հանդեպ մեր գործած արարքների մասին։ Մենք խաբված էինք կորսայան մոլորությամբ, անլեզու կուռքեր էինք պաշտում և չարչարում էինք կենդանի Աստուծո սպասավորներին։ Աստված ցանկացավ չարչարել և պատժել մեզ՝ մեր իսկ կողմից պաշտվող դևերի միջոցով, իսկ մեր կողմից մահվան վտանգներին ենթարկված մարդուն փրկեց, նա մեզ ուղղեց դեպի ճշմարտության ճանապարհը»։

101. Նա մեկ առ մեկ պատմեց բոլոր տեղի ունեցածի մասին և հարցրեց թագավորներին՝ ինչ անել։ Բոլորը երկյուղով և հրճվանքով լի գոչում էին պատրաստակամությամբ հպատակվել Գրիգորին, հետևել նրա

---

* Շարունակված «Էջմիածին» ամսագրի 1966 թվականի Է-ից և Ը-ից։

13 Բնագրում Τζάνων։

14 Անդրիոկոդրիտ (Ἀνδριοκοριτων) և Կոդրիտ (Κοριτων) տեղանունները մնում են ստուգման կարոտ։ Հավանարար պետք է կապ ունենան Կորրիք, Կորճայք, Կորդուք տեղանունների հետ (Documeots, p. 219—220)։

15 Փակագծերի մեջ եղած բառերը հայկական Ագաթանգեղոսից են վերցված, քանի որ հունական Վարքը այս տեղում անընթեռնելի է։ Արաբական Վարքը նույնպես ունի «երեքտասաներորդ՝ իշխանն Ուտեաց, չորեքտասաներորդ...» (Մկրտութիւն, էջ 49)։

դավանանքին և վարդապետությանը, լսել, հնազանդ լինել և կատարել սրբի հրամանները, հրաժարվելով կռապաշտությունից։

102. Բոլորը իրենց հայացքը հառեցին սուրբ Գրիգորին, իսկ նա դիմեց նրանց աստվածաշունչ գրքերի մեկնության ամենաճշմարիտ վարդապետությամբ և բոլորին ամրապնդեց սուրբ երրորդության հավատքին։ Նա ամրապնդեց նրանց հավատքը՝ Տեր Հոր ամենակալին, միածին Որդուն՝ ճշմարիտ Աստծուն, որ ծնվեց ճշմարիտ Աստծուց, և Սուրբ Հոգուն և նրանցից պահանջում էր իրենց հավատացյալ լինելու ապացույցներ։ Նա նրանց հետ միասին շտապում էր կուռքերը կործանելու։

103. Նախ և առաջ Տրդատ թագավորը հրամայեց կործանել նախնյաց (կուռքերի) տաճարները[16]։ Այնուհետև սուրբ Գրիգորի հետ, թագավորներով և բոլոր մեծամեծներով նա գնաց Արտաշատ քաղաքը և հրամայեց կործանել Արտեմիսի տաճարը, նմանապես և այսպես կոչված Ապոլոնի պատգամարանը[17]։ Նա ջարդ ու փշուր արեց ոսկե և արծաթե սպասները ու հրամայեց պահել, որպեսզի (դրանցով) հետագայում զարդարեն կառուցվելիք վկայարանները։

104. Դևերը, տեսնելով տեղի ունեցածը, ինչպես և թագավորների և ամբողջ ժողովրդի ջերմեռանդությունը, մարդու կերպարանք ստանալով դարձան հեծյալ և հետևակ ռազմիկներ և փորձում էին նիզակներով դիմագրել. նրանք տաճարների միջից նետեր, նիզակներ և քարեր էին արձակում, բայց դրանք անզոր էին և ոչ ոքի վնաս չէին հասցնում։ Իսկ սուրբ Գրիգորը պատվական և կենարար խաչի նշանն անելով, դիմեց ընդդեմ երևացող զորքի և բոլորը աներևութացան։ Լսվում էր նրանց ձայնը, որ ասում էր. «Վա՜յ մեզ. Քրիստոսը մեզ ամեն տեղից հալածեց և այդ մեզ արեց մարդկային արարածի դուստր Մարիամից ծնվածը։ Ահա, մենք այստեղից էլ ենք դուրս քշվում կապյալ մարդու կողմից։ Մենք բազում փորձանքներ բերեցինք [նրանց գլխին], բայց ապարդյուն։ Ուստի հեռանանք լեռները»։

105. Սուրբ Գրիգորը կործանելով տաճարները, առաջարկեց Տրդատ թագավորին քրիստոնյա դարձնել քրմերին, իսկ տաճարական սպասները տալ՝ մի մասը չքավորներին, իսկ մնացածը պահել թագավորական գանձարանում։ (Քրմերը) միաբան լինելով, փութացին կատարյալ (հավատքն) ընդունել, փրկվելով կռապաշտության մոլորությունից, ամուր կանգնել Քրիստոսի հավատքի մեջ։

106. Թագավորը փութաց կործանել նաև Զեսի տաճարը և ոսկե ու արծաթե սպասը գանձարանը տեղափոխել։ Նա հրամայեց պահպանել [տաճարներին պատկանող] գյուղերը մինչև որ կառուցվեն եկեղեցիները և նա, ում կընկնի քահանայության վիճակը, թող տիրություն անի նրանց, ըստ իր ցանկության։

107. Սուրբ Գրիգորը կառուցվելիք տաճարների տեղերում խաչեր կանգնեցրեց և ցանկապատներ կառուցեց, ապա թագավորի և մնացած ժողովրդի հետ գնաց մի այլ վայր, բայց զոհասեղան նա չկառուցեց, որովհետև չուներ քահանայության պատիվ։ Նա ասաց, որ քաղաքներում, գյուղերում, ագարակներում կանգնեցնեն խաչի նշանը, որպեսզի դևերը ամենուրեք փախուստի մատնվեն։ Նա ամեն տեղ քարոզում էր խոսքն Աստուծո, լինելով շատ ուսյալ և իր ջերմեռանդության մեջ զորավիգ ունենալով Սուրբ Հոգին։

108. Նա թագավորի հետ հասավ Դարանաղյաց գավառի Թորդան գյուղը, որտեղ էր գտնվում Հոեայի տաճարը. ահա այն ես կործանելով, եղած գույքը տվեցին չքավորներին։ Ինչ վերաբերում է կուռքերին, ոսկե և արծաթե և թանկագին քարերով ագուցված սրբազան սպասներին և նվիրատվություններին, ապա դրանք ջարդ ու փշուր անելով պահեցին, ապագայում կառուցվելիք սուրբ տաճարների համար, իսկ Թորդան գյուղը դարձրին Քրիստոսի եկեղեցուն ընթակա։

109. Նրանք այնտեղ կանգնեցրին պատվական խաչը և շարժվեցին դեպի այլ շրջաններ. Թագավորը մեծ ջերմեռանդություն էր ցուցաբերում տիրանալու կռապաշտության մոլորության մեջ (ապավինած) բոլոր մարդկանց և սուրբ Գրիգորի վարդապետության միջոցով բերելու Քրիստոս Աստծուն։

110. Նրանք եկան նաև Անի ամրոցը, որի միջնաբերդում էին գտնվում նախկին թագավորների դամբարանները։ Հայոց թագավորը որտեղ էլ որ վախճանվեր, բերվում էր (թաղվելու) Անիի միջնաբերդը։ Այնտեղ էր գտնվում նաև թագավորների թանկագին նվիրատվություններով լի Զեսի տաճարը։ Նրանք այնտեղ ևս նույն բանն արեցին, կանգնեցրին Քրիստոսի նշանը և շարժվեցին դեպի այլ գավառ։

111. Նրանք հասան Երիզա մեծ գյուղում գտնվող Արտեմիսի տաճարը, որտեղ սովորության համաձայն թագավորները տոնակատարություններ էին կազմակերպում և որտեղից Գրիգորը սկսեց իր մարտիրոսությունը՝ ենթարկվելով սարսափելի պատիժների։ Երբ նրանք, այսինքն թագավորը իր ամբողջ զորքով ու սուրբ այրով եկան, դևերը, դինվորների կերպարանք ստացած ուզեցին վախեցնել նրանց։ Բայց սուրբը խաչի նշանով հալածեց նրանց և դրանով իսկ ավելի բորբոքեց ժողովրդի սերը դեպի կենդանի Աստվածը, նամանավանդ, երբ տաճարի պատերը ինքնաբերաբար տապալվեցին։

112. Թագավորը բոլոր իր ենթականերով անցավ Եփրատ գետը և հասավ Թիլ ավանը։ Այնտեղ ևս նա կործանեց Աթենայի տաճարը, իսկ սրբազան սպասները նույնպես հրամայեց պահել Թիլ ավանում՝ նվիրելով այն կառուցվելիք եկեղեցուն։

---

16 Բնագրում՝ τοὺς ναοὺς τῶν πατέρων «նախնյաց (կամ հայրերի) տաճարները», որոշ մտքեր է արթնացնում։ Սրանք կարող են լինել նախնիների կառուցած տաճարները, միաժամանակ նաև նախնիների պաշտամունքին նվիրված մեհյաններ, քանի որ հայկական լեռնաշխարհում այդպիսի երևույթ գոյություն է ունեցել։

17 Սրան համապատասխան տեղում Ագաթանգեղոսն ունի «Երազացույց, երազահան պաշտաման Տրի դիցն» (էջ 404)։

113. Այսպես, ամեն տեղ շրջելով, նրանք քրիստոնեական հավատքի հիմքն էին դնում։ Բոլորը շտապում էին նրանց մոտ, և' որովհետև վախենում էին թագավորից, և' տեսնելով Գրիգորի գործած հրաշքները։ Քանզի նա ճառով և աղոթքով կործանում էր կուռքերի տաճարները, բուժում էր երկարամյա արատներով տառապող և իր մոտ բերվող հիվանդներին։

114. Իսկ Տրդատ թագավորը չէր դադարում յուրաքանչյուր շրջանում անձամբ քարոզելուց, նախկին ամբարշտությունն ու դավանանքը պիղծ և անսուրբ անվանելով։ [Պատմում էր] իր և իր մեծամեծների ստացած պատժի մասին, ապա նաև թունավոր և ամենասարսափելի օձերով լի վիրապից Աստուծո կողմից փրկված Գրիգորից բուժվելու մասին։

115. Նրանք հասան նաև Դերջան գավառի Բագայառիճ գյուղը, որտեղ [Գրիգորը] կործանեց Դիոնիսոսի տաճարը և հոգևոր վարդապետությամբ բոլորին համոզեց հրաժարվել կռապաշտության մոլորությունից և գիմել ճշմարիտ աստվածածանոթությունը։

116. Այնուհետև Տրդատը շտապեց դեպի Այրարատ նահանգը, թագուհու, քրոջ և մնացած մեծամեծների հետ՝ քահանայի հարցի շուրջը խորհրդակցելու համար, ո՛վ պետք է հովվություն անի և իրենց մկրտի։ Նա սուրբ Գրիգորի հետ հասավ վերոհիշյալ Այրարատ նահանգի Վաղարշապատ քաղաքը և խորհրդակցելով բոլորի հետ, ասաց.

117. «Եկե՛ք ուրեմն առաջադրենք նրան, ով մեզ առաջնորդեց դեպի կենաց ճանապարհը, ցույց տվեց ճշմարտության լուսատուն և փրկեց մեզ մութ ու խավար ստրկությունից։ Շտապենք նրան տալու պատիվը քահանայության, որպեսզի արժանանանք Քրիստոսի մկրտության և սուրբ հաղորդության, քանզի վառվում են հոգիները մեր, ունկնդրած լինելով Գրիգորի վարդապետությունը, բայց մենք հուզմունքի մեջ ենք, քանզի դեռ չենք արժանացել կատարյալին։

118. Սուրբ Գրիգորն ասում է նրանց. «Ես ի վիճակի չեմ նման բեռ կրելու և միջնորդ դառնալու կենդանի Աստուծո և մարդկանց միջև»։

119. Նրանք պատասխանեցին նրան. «Դու, ով այսքա՜ն և նման հրաշքներ գործեցիր, ով քո սուրբ վարդապետությամբ և իմաստուն ու քաղցրագույն խոսքերով մեզ ճշմարիտ հավատքի մեջ ամրապնդեցիր, ինչպե՛ս չես կարող լինել միջնորդը Աստուծո և մարդկանց։ Մենք արդեն փորձով գիտենք՝ ինչ որ դու խնդրում ես կենդանի Աստծուց, կատարվում է»։

120. Նա շարունակ մերժում էր, երբ վրա հասավ երեկոն և թագավորական ընթրիքից հետո ամեն մեկը գնաց իր տեղը։ Եվ ահա փայլակի նման մի հրեշտակ երևաց թագավորին, ասելով այսպես. «Դու բարի և ճշմարիտ ճանապարհի վրա ես, Տրդատ. փութա՛ ուրեմն կատարելու քո մտադրությունը։ Նա, ով ամրապնդեց ձեզ (հավատքի մեջ), նա՛ էլ ձեր վրա կկատարի երրորդության խորհուրդը։ Շտապ կարգով Գրիգորին տվեք քահանայության վիճակը, ուղարկելով նրան Կեսարիա, որտեղ որ ուսանել էր խոսքը ճշմարտության և ստացել իր ամբողջ կրթությունը։ Ես Գրիգորին էլ կհայտնվեմ, որպեսզի չմերժի քո առաջարկը»։

121. Թագավորը շատ վախեցած հրամայեց բոլորին հավաքվել։ Նույն հրեշտակը Գրիգորին հայտնվեց և ասաց. «Զգուշացի՛ր հակաճառել Տրդատին, ո՜վ Գրիգոր, երբ նա առաջարկի քեզ հովվել ժողովրդին, որ քո՛ կողմից և քո՛ համբերությամբ փրկվեց»։

122. Առավոտյան բոլորը հավաքվեցին թագավորի մոտ. կանչվեց նաև սուրբ Գրիգորը։ Թագավորը բոլորին պատմեց սարսափելի տեսիլքի մասին, այն մասին, որ ինքը արժանի դարձավ երազում տեսնել հրեշտակի. ժողովուրդը ուրախացավ, նաև սարսափեց, երբ թագավորն ասաց, թե հրեշտակը Գրիգորին ասաց համաձայնվել և իր՝ Տրդատի խոսքերին չհակաճառել։ Նա շտապում էր վերջնականապես ի կատար ածել իր մտադրությունը։ Սուրբ Գրիգորը ևս պատմեց իր տեսիլքի մասին և հաստատեց թագավորի պատմած տեսիլքն ու ասաց. «Թող լինի այնպես, ինչպես Տերն է կամենում և դուք»։

123. Մեծամեծները պատրաստվեցին սուրբ Գրիգորի հետ գնալ Կեսարիա, իսկ թագավորը նրան տրամադրեց բազում նվերներ և դրամական միջոցներ, նվերները հայրապետի և սուրբ եկեղեցու մյուս սպասավորներին հանձնելու համար, ինչպես նաև իշխանավորներին, իսկ դրամը՝ իրենց ճանապարհածախսի և Կեսարիայում ապրելու համար։ Մեծամեծները ևս իրենց հետ վերցրին բազում դրամ և նվերներ։

124. Վերոհիշյալ մեծամեծները սուրբ Գրիգորին նստեցրին թանկագին քարերով ազուցված արքունական ոսկեպատ կառքի վրա և որրի հետ ճանապարհ ընկան դեպի Կեսարիա։ Խումբը գլխավորում էր Մամիկոնեից նախարարը, ամբողջ Հայաստանի սպարապետը։ Նա ոմանց առանձնացրել էր և նախօրոք ուղարկել տարբեր տեղեր և վայրեր՝ անհրաժեշտ նախապատրաստությունը տեսնելու, քանզի մեծամեծներին հետևվում էին երեք բյուր հեծյալներ, բացի դրանից նաև բազում հետևակներ, որոնք սպասարկում էին նրանց։

125. Բոլոր գյուղերի տղամարդիկ, կանայք, երեխաներ, լսելով Քրիստոսի վկա Գրիգորի Կեսարիա գնալու մասին՝ աստվածածանոթության եկած Հայոց ժողովրդին հովվելու հարցի կապակցությամբ, դիմավորելու էին գնում մոմերով։ Նույնպես և քահանաները դուրս էին գալիս սրբին ընդառաջ, օրհնելով և փառաբանելով Աստծուն։

126. Սեբաստացվոց եպիսկոպոսը իր ամբողջ սրբասեր հոգևորականությամբ խնդրում էր սրբին (և ուղեկցողներին), որ բազում օրեր մնան իրենց քաղաքում։ Նրանք խոստացան այդ անել իրենց վերադարձին և ընդամենը երկու օր մնալով այնտեղ, շարժվեցին դեպի Կեսարիա։

127. Համբավը ավելի շուտ էր տեղ հասնում, քան այն մարդիկ, որոնք առաջից էին գնում պետք եղածը նախապատրաստելու համար. գյուղերի ու տղարակների մարդի՛կ դուրս էին գալիս ընդդեմ հանդիման, զարմանում եղելության վրա ու գոհություն էին հայտնում Աստծուն, որ իրենց փրկեց ամբարիշտ դավանանքից։

128. Հասնելով Կեսարիայի մոտակայքը, մարդ ուղարկեցին հայտնելու Ղեոնդիոս արքեպիսկոպոսին, ինչպես և քաղաքի իշխանին, հարցնելով նաև, թե ուր

պետք է իրենք իջեանեն և իրենց ծախսերի համար ուղարկեցին բաղում ոսկի։

*129.* Սուրբ հայրապետը, ապա նրա հետ նաև քաղաքի իշխանը և մնացած քաղաքացիք, իմանալով այդ մասին, շատ ուրախացան և ամեն ինչ նախապատրաստեցին նրանց սպասարկելու համար. նրանք կարգադրեցին, որ մեծամեծներից յուրաքանչյուրը բնակվի մեծ տներից մեկում, իսկ սուրբ Գրիգորին հատկացվեց եպիսկոպոսարանի շենքը։

130. Բոլոր քաղաքացիք մեծ ու փոքր իրենց կանանցով ու երեխաներով քաղաքի իշխանի հետ միասին նրանց դիմավորեցին քաղաքից դուրս չորս մղոն հեռավորության վրա, ողջունեցին սրբին, երբ նա իջավ թագավորական կառքից։ Այդ ամենը նրանք մեծ ուրախությամբ արեցին, և այնուհետև մտան քաղաք։

131. Երբ բոլորը հասան եկեղեցու մոտ, նրանց դիմավորեց Ղեոնդիոս արքեպիսկոպոսը՝ բոլոր քահանայապետներով և ողջագուրվելով սուրբ Գրիգորի և բոլոր տասնվեց մեծամեծների հետ, քաղաքացիներով և մեծամեծներով մտավ եկեղեցի և եպիսկոպոսարանում աղոթելուց հետո (...)։ Նա նրանցից ամեն ինչ իմացավ, վարդապետեց նրանց աստվածածանոթության ճանապարհը, այնուհետև մեծամեծներին և վկա Գրիգորին ընթրիքի հրավիրեց, իսկ մյուսներին արձակեց գնալ յուրաքանչյուրն իրեն հատկացված բնակարանը։

132. Ամբողջ քաղաքում սրբի գալստյան և այնքան ժողովրդի փրկության առթիվ ուրախություն էր, հրավառություն, (Գրիգորի) կնոջ մերձավորներն ու բարեկամները, բացի դրանից (որդիների) դաստիարակները շատ ուրախացան և միշտ սրբի հետ էին։

133. Արքեպիսկոպոս Ղեոնգիոսը ոմանց ուղարկեց մինչև Բյութանիայի Քաղկեդոն (քաղաքը) իրեն ենթակա եպիսկոպոսներին և մետրապոլիտներին հրավիրելու. երբ եպիսկոպոսներն ու մետրապոլիտները հավաքվեցին՝ թվով քսանչ հոգի, նրանց տրվեց Տրդատ թագավորի նամակը, որն ուներ հետևյալ բովանդակությունը.

134. «Տրդատ թագավորը Հայոց Մեծաց, իմ կենակից Աշխեն թագուհի, քույր Խոսրովիդուխտ և համայն Հայաստան առ Կապադովկիայի հովվապետ արքեպիսկոպոսն, ամբողջ սուրբ կղերն, մեծափառ իշխանները և համայն քրիստոնյաներին։ Դիմում եմ մեծ սիրով ու խոնարհամտությամբ. ով երանելագույններ, դուք, որ կենդանի Աստուծո միջոցով բուժում եք հիվանդներին, պետք է քարոզեք, վարդապետեք և հանգամանորեն շարադրեք Աստուծո մարդասիրական ուսմունքը, որ մեզ է հասել։

135. «Անցյալում մեզ պատել էր մթին և խավար մշուշը և ի վիճակի չէինք ճանաչել կենդանի Աստծուն, հայացքը հարել արեգակին արդարության. մենք գտնվում էինք կռապաշտության մոլորության մեջ, որ ավանդ էինք ստացել մեր հայրերից, որի պատճառով խորշում էինք յուրաքանչյուրից, ով մեր դավանակիցը չէր և չարչարում նրան։ Իսկ մարդասեր Աստվածը, ցանկանալով մեզ տանել ճշմարիտ ճանապարհով, մեզ ուղարկեց սուրբ վկաներ, որպեսզի նրանք ևս ենթարկվելով մեր պատճառած չարչարանքներին, դառնան Քրիստոսի մարտիրոսներ. իսկ մենք՝ ճանաչենք միակ Աստծուն։

136. «Այս Գրիգորին, այն պատճառով, որ նա չուզեց հաղորդվել ամենապիղծ խորհրդին՝ զոհ մատուցել կուռքերին, մենք ամեն տեսակի չարչարանքների ենթարկեցինք. բայց ի վերջո չկարողանալով դիմանալ նրա համբերությանը, ամենադաժան մահապատժի դատապարտեցինք, նետեցինք այն վիրապը, որտեղ գտնվում էին թունավոր սողուններ և օձեր. վիրապ, ուր այլ չարագործներ էին նետվել և դեռ հատակին չհասած մեռել, տեղն ու տեղը իրենց հոգին ավանդել, չկարողանալով դիմանալ օձերի սուլոցին։ Բայց նա շնորհիվ Աստուծո տասնհինգ տարի անվնաս մնաց, որպեսզի նրա վարդապետության միջոցով մենք փրկվենք։

137. «Հռոմայեցիների կայսր Դիոկլետիանոսի մոտից, Հռոմ մեծ քաղաքից փախուստի դիմեցին սուրբ կույսեր, որոնց մասին Դիոկլետիանոսը մեզ նամակով հայտնեց։ Մենք նրանց բռնեցինք, բայց երբ չկարողացանք ընդունել տալ մեր մոլորությունը, բազում չարչարանքների ենթարկելով, սպանեցինք։

138. «Բայց ի վերջո Քրիստոսը որոշեց իր ցասումով մեզ մարդասեր դարձնել, ինձ, թագավորիս հանձնեց մեր կողմից պաշտվող դևերին, և վայրի գազանի կերպարանափոխեց։ Մեր մեծամեծներն ու սպասավորները պատառոտում էին իրենց հանդերձները, իրենց միսն էին ուտում։

139. «Այդ մասին մեկ առ մեկ կպատմեն մի, կողմից ուղարկված մեծամեծները, որոնք պետք է ուղեկցեն մարտիրոս Գրիգորին, ով իմ քրոջ տեսած տեսիլքի պատճառով ազատվեց վիրապից և դուրս գալով բուժեց մեր արատները, վարդապետեց ամուր կանգնել ուղղափառ հավատքի մեջ, ճանաչել կենդանի Աստծուն, Որդուն և Սուրբ Հոգուն։

140. «Մենք նպատակահարմար գտանք նրան հովիվ նշանակել, բայց այդ ոչ մի կերպ չարեցինք։ Ինձ՝ անարժանիս փայլատակող մի հրեշտակ երևաց, փութացրեց այդ անել, ասաց նաև, որ (Գրիգորին) ես, կհայտնվի որպեսզի նա չմերժի, ավելացնելով, որ ձեռնադրվելու համար պետք է գնա այնտեղ, որտեղ նա սովորել է սուրբ Գիրքը։

141. «Մենք խնդրում ենք, որ քո սուրբ ձեռնադրությամբ նա դառնա քահանա ու հովիվ և ուղարկված մեծամեծներով նրան արձակիր։ Մենք դարձանք այնքան ջերմեռանդ, որ ջարդեցինք կուռքերը, կործանեցինք տաճարները. վկա Գրիգորն ամենուրեք խաչեր է կանգնեցնում՝ կառուցվելիք եկեղեցիների տեղերը նշանակելով։

142. «Քո սրբազնությունը՝ սուրբ հոգևորականներով և ձեր ամբողջ քրիստոսասեր ժողովրդով, աղոթեցեք մեզ համար, շտապ կարգով ի կատար ածեք մեր խնդրանքը, որպեսզի մենք ևս կատարելության արժանանանք, և ստանալով բարի և փրկիչ Քրիստոսի մկրտությունն ու շնորհքը ձեր բանավոր հոտին մաս կազմենք։ Ո՛ղջ լերուք սրբազնագույններ՝ ձեր սրբազան կղերով, մեծափառ իշխանավորներով և ամբողջ ժողովրդով»։

143. Սուրբ Ղևոնդիոսը Կեսարիա քաղաքի բոլոր բնակիչների հետ շատ ուրախացավ և շտապեց հողալ ու հյուրընկալել վկա Գրիգորին և մեծամեծներին, որոնք սրբազնագույն եկեղեցիներին նվիրաբերում էին ոսկյա և արծաթյա սպասներ։ Մեծամեծները նման նվերներ բերել էին նաև իրենց տներից և սեփական հայրենիքի ամենաթանկագին իրերը նվիրաբերում էին ոչ միայն սուրբ տներին, այլև քաղաքի իշխաններին։

144. Կեսարիա քաղաքը մեծ երանության մեջ էր, որովհետև ընդունել էր մի վկայի, որովհետև այսքան և այսպիսի մարդիկ հարեցին Աստուծո սուրբ եկեղեցուն, ազատվեցին մոլորությունից և կործանումից, վերադարձան կենդանի Աստծուն, քանզի այսքան հեթանոսներ սուրբ Գրիգորի համբերությամբ և վարդապետությամբ փրկվեցին։

145. Սրբազնագույն եպիսկոպոսները սրբազնագույն Հայրապետ Ղևոնդիոսի հետ հավաքվեցին, մտան սուրբ եկեղեցին, սրբին բեմ բարձրացրին և բացելով սուրբ ավետարանը դրին վկա և խոստովանող Գրիգորի վրա, նրանք բոլորը իրենց սուրբ ձեռքերը դրին նրա վրա և կարդացին ընդունված աղոթքը, ապա նրա ուսին դրեցին եմիփորոնը և ասացին. «Արժանի, արժանի, արժանի»։ Նրանք պատարագեցին, ընթերցելով սուրբ ավետարանի ընթերցվածը. «Ես եմ հովիվը բարի» և շարունակությունը։ Սաղմոսերգությունից հետո բոլորը ողջունում էին վկային։

146. Բոլոր եպիսկոպոսները և իշխանավորները, Կեսարիայի երևելագույն մարդիկ և մնացած ժողովուրդը՝ տղամարդիկ, կանայք և երեխաներ, նրանց բազում օրեր հյուրընկալելուց հետո, ջահերով և մոմերով, փառավորելով (Աստծուն) ճանապարհեցին մինչև քաղաքից դուրս։

147. Արքեպիսկոպոս սուրբ Ղևոնդիոսը սուրբ Գրիգորի խնդրանոք տվեց սուրբ Կարապետ և Մկրտիչ Հովհաննեսի մասունքներից, ինչպես նաև պատասխան նամակ և մյուս եպիսկոպոսների հետ համբուրեց նրան։ Ապա նստեցնելով թագավորական կառքը, հրաժեշտ տվին, իսկ իրենք վերադարձան քաղաք, կատարված իրողության վրա զարմացած և ընդհանրական եկեղեցուն միացած ժողովրդի համար ուրախացած։

148. Հայրապետի կողմից գրված նամակի բովանդակությունը հետևյալն էր. «Առ Տրդատ թագավոր Հայոց Մեծաց, Աշխեն թագուհի, Խոսրովիդուխտ և համայն ժողովուրդ. խաղաղություն կենդանի Աստծուց, Տեր Հիսուս Քրիստոսից և Սուրբ Հոգուց։ Ղևոնդիոս արքեպիսկոպոս Մեծ Կեսարիայի, ողջույն։ (Դուք) տանջվածներդ ու (ճշմարտության) իմացության եկողներդ, մոլորյալներդ, որ դտնվեցիք, մեռածներդ, որ կյանք ստացաք, միշտ ուրախ և երջանիկ եղեք, որ մարտիրոսներին ձեր կողմից պատճառած չարչարանքներով և անցյալում ձեր ստացած պատժով եկաք ճշմարտության իմացությանը։

149. «Մենք ձեր նամակներից և ուղարկված մարդկանցից ամեն ինչ իմացանք, փառավորեցինք շնորհքը Քրիստոսի, որ փայլատակեց սուրբ կույսերի միջոցով, կույսեր, որոնց դուք սպանեցիք, երբ դեռ մոլորության մեջ էիք. և որոնք ժառանգեցին կյանքը հավիտենականը։ Նաև սուրբ Գրիգորի միջոցով, որ ենթարկվեց այնքան և այնպիսի չարչարանքների, Գրիգորի, որ մանուկ հասակից դաստիարակվելով աստվածածանոթության ողով, բարվո իմացությունն ստացավ, սովորեց Աստվածաշունչ գրքերը։ Ձեր մեջ լինելով, նա հավատարիմ մնաց Քրիստոսի հավատքին, և ըստ Առաքյալի[18], ընթացքը կատարելով, հաղթանակներ տարավ, իր վարդապետությամբ ձեր մեջ տարածեց շնորհքն Աստուծո և դասվեց Աստուծո ընտրյալների դասը։

150. «Մեր խոնարհությունը ձեր խնդրանքի համաձայն նրան շնորհեց քահանայության պատիվը, նրան, ում նախապես դիմել էր Սուրբ Հոգին ձեզ [հավատքի մեջ] ամրապնդելու համար և նա կարծես քահանա լինելով ամեն ինչ արեց ձեզ համար։ Ընդունեք այժմ հովվին բարի և ուսուցչին իմաստուն՝ քահանայապետին։

151. «Իսկ մենք անվերջ կաղոթենք, որպեսզի դուք անսասան մնաք ուղիղ հավատքի մեջ, սիրեք Աստծուն, ենթարկվեք քահանայապետին, որ ձեզ է պարգևել շնորհիվ Քրիստոսի։ Այդպիսով դուք սիրելի կլինեք մեզ «դի ես թեպէտ և մարմնով մեկուսի եմ, սակայն հոգով մերձ եմ»[19]. Աստված բարի և միածին Որդին՝ Սուրբ Հոգու միջոցով անխռով պահի ձեր միտքը, առողջ հոգով և մարմնով իր խաղաղության մեջ»։

152. Նրանք հրճվանքով դուրս եկան (Կեսարիայից) և հասնելով սեբաստացվոց գավառը, Տրիզիա կոչված վայրը, վրաններ խփեցին և հանգստացան, քանզի չուզեցին որևէ մեկին ձանձրույթ պատճառել՝ գյուղում կամ ագարակում։ Իսկ բոլոր սեբաստացիք իրենց սրբազան եպիսկոպոս Պետրոսի[20] և իշխանի հետ միասին դիմավորեցին նրանց և մեծ ուրախությամբ քաղաք մտցրին։

153. Քաղաքացիների խնդրանքով նրանք այնտեղ մնացին վեց օր և ապա շարժվեցին դեպի իրենց երկիրը։ Սուրբ Գրիգորը իր հետ վերցրեց երեցներ և մենակյացներ, որպեսզի վիճակեցուցացե նրանց Հայոց եկեղեցում։ Նա Հայրապետ Ղևոնդիոսի կողմից ունեի նաև ընդհանրական թղթեր, հասցեագրված սրբազան եպիսկոպոս Պետրոսին, որպեսզի սուրբ կանոնների համաձայն իրեն աթոռակալ նշանակեն։

154. Երբ բոլորը հասան Մեծ Հայք երկիրը, ամեն տեղից շտապում էին նրանց դիմավորելու (Գրիգորը) յուրաքանչյուր քաղաքում, որտեղ խաչեր էր կանգնեցրել նորակառույց եկեղեցիներ դտավ։ Պատարագ մատուցելով նրանք շարժվեցին դեպի Տարոն երկիրը։

155. Հասնելով Աշտիշատ գյուղը, թագավորական կառքը, որի վրա էին նստած սուրբ Գրիգորը և սրբազան Պետրոսը իրենց հետ ունենալով փառավորյալ մկրտիչ Հովհաննեսի և սուրբ Աթանագինեսի սուրբ մասունքները, մի վայրում կանգ առավ։ Իմանալով, որ սրբերը (Մկրտիչն ու Աթանագինեսը) ուզում են այդ

---

[18] Բ Տիմ. Դ 7։

[19] Ա Կորնթ. Ե 3։

[20] Սեբաստիայի Պետրոս եպիսկոպոսը հիշվում է նաև այլ տեղերում։ Պետք է տարբերել այս Պետրոսին նույնպես Սեբաստիայում ապրած մյուս Պետրոսից Documenst, 229—230)։

վայրում բնակվել, (Գրիգորը) մեծամեծներին հրաման տվեց կառուցել սուրբ Հովհաննեսի եկեղեցին։ Երբ սկսվեց մարգարեանոցի կառուցումը, նրանք իջան կառքից և Աշտիշատ գյուղում հաստատվեցին։

156. Մի բարձր տեղում էր գտնվում Ափրոդիտեի տաճարը։ [Գրիգորն ու Պետրոսը] հրամայեցին մեծամեծներին իրենց թիկնապահներով և կացիններ կրող գյուղացիների բազմությամբ գնան ու կործանեն այն։ Բայց նրանք գնալով այնտեղ, չկարողացան ոչ մուտքերը գտնել, ոչ էլ պատերը քանդել։

157. Սուրբ Գրիգորը լսելով այդ, վերցրեց պատվական և կենարար խաչը և ըստ իր սովորության շտապեց տաճարի դիմաց գտնվող վայրը, որտեղ ծունր դնելով սկսեց աղոթել։ Քամիներ բարձրացան, քարերն ու տանիքի գերանները, սպասքը ու տաճարի սպասավորները օդ բարձրացան և մի հեռավոր ձորում թափվեցին։

158. Սրբազան Պետրոսը, որ սուրբ Գրիգորի հետ էր, տեսնելով այդ ապշեց։ Իսկ մեծամեծները ուրախությամբ վերադարձան և խնդրում էին մկրտվել։ (Գրիգորը) այնտեղ թաղեց սրբերի, այն է կարապետ ու մկրտիչ (Հովհաննեսի) և վկա Աթանագինեսի (մասունքները), նստավ առաքելական աթոռին և բոլոր մեծամեծներին՝ կանանցով և երեխաներով մկրտեց։

159. Տրդատ թագավորը, թագուհի Աշխենի և իր քույր Խոսրովիդուխտի, ապա նաև վրաց, լազերի և աղվանից թագավորների, ցեղապետների և նախարարների հետ, դիմավորեց սուրբ Գրիգորին։ Նա ողջունեց նրան, ինչպես և սրբազան Պետրոսին, ընդունեց բոլոր մեծամեծներին. Նա ընդունեց նաև սրբազնագույն հայրապետ Ղեոնգիոսի սրբազան նամակը ու ընթերցեց. Նա հունական և հռոմեական շատ բարձր կրթություն էր ստացել, եղել էր փիլիսոփայական դպրոցներում, երբ ծառայում էր հռոմայեցվոց զորավար և հյուպատոս Լիկիանոսի մոտ։ Նա Ղեոնգիոսի նամակը հունարենից հայերեն թարգմանեց։ Բոլոր ունկնդիրները մեծ ցանկություն ունեցան արժանանալու սուրբ մկրտության և մասնակից դառնալ անարատ հաղորդության:

160. Սուրբ Գրիգորը և թագավորը բազում նվերներ տվեցին սրբազան Պետրոսին և ճանապարհեցին։

161. Իսկ սուրբ Գրիգորը նորից սկսեց հոգևոր վարդապետությունը և ուսուցանում էր ժողովրդին ճշմարիտ խոսքը։ Նա նրանց առաջարկեց երեսուն օր պաս պահել, պարապել հավատքի ուսմամբ և ահա այդ սահմանված օրերը լրանալուց հետո խոստացավ մկրտել։

162. Թագավորն ու մեծամեծները արեցին այն, ինչ որ նա ասաց և իրենց հարաբերություններում այլևս չէին վարվում համաձայն իրենց գրաված դիրքի. հասարակ մարդիկ և թագավորները իրար էին հարաբերվում ինչպես հավասարը հավասարի հետ:

163. Իսկ սուրբ Գրիգորը փութաց Բագավանում եկեղեցի կառուցել. Նա իրեն նվիրեց աղոթքների և (Աստծուն) պաղատելուն, մաղթելով, որ ժողովուրդը (ամուր) մնա Նրա ավանդված հավատքի մեջ։ Նա ամենաբարեպաշտ երեցների և մենակյացների հես եկեղեցիներ էր հիմնադրում, սուրբ Գրքին քաջածանոթ մարդկանց քահանա էր նշանակում, ոմանց ուղարկում էր Վրաց և Լազերի երկիրը, իսկ ուրիշներին՝ Աղվանք։

164. Երբ երեսուն օրը լրացավ, (Գրիգորը), երեցները և ամբողջ կղերը ողջ ժողովրդին բերեցին Արածանի գետը, թագավորական Բագավան գյուղին մոտ։ Նրանք շուրջ երեսուն յոթ բյուր մարդ էին. Նրանց թվում նաև Տրդատ թագավորը, Լազերի, Վրաց և Աղվանից թագավորները և մեծամեծները, կուսակալներ նախարարներ և ցեղապետներ. Նրանց ամբողջ զորքը, մեծաթիվ սպասավորությունը, կանայք, տղամարդիկ և երեխաներ։

165. Այնուհետև գետի մեջտեղում երկարացրին վարագույրներ և ծածկույթներ, որպեսզի թագուհիները և բոլոր կանայք ծածկույթների տակ իջնեն մկրտության ավազանը։ (Տրդատը) հրամայեց անցյալում մկրտված մեծամեծներին ու նրանց կանանց սրբի և նրա հետ եղող քահանաների մոտ բերվող մարդկանց սպասարկեն, տղամարդիկ՝ տղամարդկանց, իսկ կանայք՝ կանանց։

166. Երբ բոլորը գետի ափին հանեցին իրենց հանդերձները նախ և առաջ թագավորը, ապա մնացած մեծամեծները, (Գրիգորը) մյուռոն քսեց նրանց և յուրաքանչյուրին խաչակնքեց։

167. Նա վերցրեց մյուռոն ու յուղ և գետը թափվեց, խաչի նշանն անելով։ Տեղի ունեցավ սքանչելի հրաշք, գետը ետ դարձավ ու խաղաղվեց, հոսանքը կանգ առավ։ (Գրիգորը) մարդկանց իջեցնում էր սրբացված ջուրը յուրաքանչյուրի վրա դնելով իր ձեռքերը և մկրտելով հանուն Հոր և Որդվո և Հոգվույն Սրբու. Բոլոր մարդկանց նկատմամբ նույն բանն էին անում նաև մյուս քահանաները։ Ջրի մեջտեղում երևաց խաչաձև սյուն հրեղեն։ Բոլորը տեսնելով ջրերի սանձահարումը և հրեղեն սյունը, ապշեցին և մեծ երկյուղի մեջ էին ու առավել ևս ամրապնդվեցին ուղղափառ հավատքի մեջ։

168. Ջրից դուրս գալով, ամեն մեկը պայծառ հանդերձներ հագավ. Նրանք մեծ ուրախությամբ պատմում էին սկզբից կատարված հրաշքների մասին և այն մասին, ինչ ջրի վրա տեղի ունեցավ։ Այնուհետև բոլորը սրբի և քահանաների հետ Աստծուն փառաբանելով, մոմերով և ջահերով գնացին Բագավանում կառուցված եկեղեցին։ Այնտեղ նրանք պատարագ մատուցեցին և սուրբ հաղորդություն ստացան։ Ամեն մեկը խնդրում էր սուրբ հաղորդության (մասնակից լինել)։

169. Այնուհետև թագավորն ու սուրբը փութացին քրիստոնյաների հավատքին բերել նախկին կռապաշտ քրմերին։ Սրանք անցյալում Հունաստանից էին բեր-

[21] Հետաքրքրական է Հայաստանի քրմերի Հունաստանից բերված լինելու փաստը։ Այս մասին հայկական Ագաթանգեղոսը չունի, իսկ արաբական Վարքը նշում է, որ «նոքա եկեալ էին յաշխարհէն Ադիթ (ալ-Ադիա) ի սպասաւորել տաճարաց կռոց...»։ Նորահայտ հունական Վարքը հնարավորություն է տալիս արաբական ձևը ճիշտ ընթեռնելու՝ Ալադիա, որպես Ἑλλάδος (Հունաց, Հունաստանի) բառի աղավաղումը։ Dcuments, p. 212)։

վել սպասարկելու տաճարներում[21], և դաստիարակված լին հեթանոսական հավատքի ոգով՝ պարտվելով սուրբ վարդապետությունից, նրանք բոլորից հետո ընդունեցին քրիստոնեական հավատքը։ (Գրիգորը) սուրբ գիրքը սովորեցրեց նաև քրմերի երեխաներին։

170. Սուրբ Գրիգորը եպիսկոպոսներ և երեցներ ձեռնադրեց և ուղարկեց Մեծ Հայքի բոլոր շրջանները։ Սեբաստացվոց երկիրը ուղարկեց Իրինարքոս անվամբ երեցին և վանահորը։ Այս Իրինարքոսը շատ համեստ մարդ էր և գովելի կյանք էր վարում։ Նա քաջատեղյակ էր սուրբ Գրոցը Քառասուն (մարտիրոսաց) մասունքների գյուտի ժամանակ Սեբաստիայի եպիսկոպոսի պաշտոնն ունեցողի սարկավագն էր և (այժմ արդեն) ալևհեր էր։ Լազերի երկիրն (ուղարկվեց) Սոփրոնիոսը. սա ես երեց էր՝ կապադովկացի և սրբին հարողներից։ Նրան (Գրիգորը) եպիսկոպոս ձեռնադրեց և ուղարկեց։ Իսկ Աղվանք ուղարկվեց մի սրբազան մարդ՝ Թովման, որը ծագումով Սատաղ փոքր քաղաքից էր։ Սուրբ Գրոց քաջածանոթ նման շատ մարդիկ էին հարել [Գրիգորին]։

171. Այդ նույն ձևով նաև Անղեղտուն, Աղձնիք, Մեծ Ծոփք, Փոքր Ծոփք, Հաշտյանք, Սյունիք, Արձն, Մոկաց երկիր և Մարդպետական, բոլոր իշխանություններում և նահանգներում եպիսկոպոսներ նշանակեց և ուղարկեց այնտեղ իրենց իշխանների հետ։ Բոլոր թագավորներն ու կուսակալները մեծ ուրախությամբ իրենց վիճակված քահանաներով շտապում էին գեպի իրենց երկիրը՝ եկեղեցիներ հիմնադրելու և վկայարաններ կառուցելու համար։

172. (Գրիգորը) շտապում էր Մեծ Հայքի այլ շրջաններում ևս եպիսկոպոսներ նշանակել, Ադրիանոսին՝ Բագրեանդում և Արածանի գետի մոտ ապրող բնակիչների համար. սա նախկինում քուրմ էր, բայց անցնելով ճշմարիտ հավատքի և աստվածածանոթության կողմը, իր մեծ առաքինությամբ և համեստությամբ արժանացավ առաքելական աթոռին։ (Գրիգորը) որպես եպիսկոպոս Բասեն ուղարկեց Եվթաղիոսին, Բասիոսին՝ Կոտայք, Մովսեսին՝ Եկեղյաց գավառ և Դերջան, Եվսեբիոսին՝ Դարանաղյաց գավառը, Հովհաննեսին՝ Կարնո գավառը, Ագապիոսին՝ Սպեր, նահանգի իշխան սպարապետի[22] հետ միասին, Ադրիոսին՝ սպարապետական տունը, որը պատկանում էր Մամիկոնյանների տոհմին։ Սրանք իրենց նախարարի՝ մեծ զորավարի և սպարապետի հետ միասին միշտ թագավորի հետ էին, դրա համար էլ սուրբ Գրիգորը հրամայեց, որ Ադրիոսը միշտ թագավորի մոտ լինի և իր, [Գրիգորի] տեղը գրավի մշտական քարոզչության և վարդապետության, գրավի մշտական քարոզչության և վարդապետության, կրթություն էր ստացել և քաջածանոթ էր Աստվածաշունչ գրքերին։ Նա Տարոնի և Տայքի եպիսկոպոսն էր։ Արտիթանին (Գրիգորը) եպիսկոպոս ձեռնադրեց և Խորխոռունյաց նախարարի հետ Մաղխազաց (գավառ) ուղարկեց. Արսուկանին՝ Շիրակ, Անտիոքոսին՝ Կորդվաց աշխարհը, Տիրիկիոսին՝ Վանանդացվոց, Աբեղյանց և Գաբեղյանց (երկիրը)։ Մի ուրիշին Կիրակոսին՝ Արշամունյաց գավառը։ Ահա այսպես ճշմարտության խոսքը քարոզելու ընդունակ բազմաթիվ մարդկանց եպիսկոպոս և քորեպիսկոպոս ձեռնադրելով ուղարկեց զանազան վայրեր և շրջաններ։

173. Իսկ սուրբը ինքը մշտական եպիսկոպոսարաններ կառուցեց Այրարատում՝ Վաղարշապատում, Արտաշատում և Դվինում և հիշյալ քաղաքները իր աթոռին ենթարկեց։ Մեծ Հայքի թագավոր Տրդատը իր ժամանակի մեծ մասը հենց այդ քաղաքներում էր անցկացնում։ Սուրբ Գրիգորը ամեն ինչ կատարելուց և բոլորին քրիստոնեական հավատքի մեջ ամրապնդելուց հետո, սրբազան Ադրիոսին թողեց իրեն պատկանող վայրում տեղապահելու, իսկ ինքը ամբողջ երկրով մեկ եպիսկոպոսներ էր հաստատում, շարունակ հսկում և ամրապնդում նրանց, որից հետո նա բնակվեց Դարանաղյաց գավառի Մանյա այրք կոչված քարայրում, իրեն նվիրելով աղոթքների, պաղատման և պասի։

174. Մեծ Հռոմում Կոստանդին կայսրը, լսելով Տրդատ թագավորի հետ կատարվածի, վկա Գրիգորի գործած հրաշքների մասին, փութաց դեսպաններ ուղարկել երկու բան ձեռք բերելու նկատառումով, այն է՝ իր մոտ ընդունելու վկային և քահանայապետին, ապա նաև հայոց թագավորին դրդելու դաշինք կնքել և բարեկամություն հաստատել։

175. Նա գրեց հետևյալ նամակը. «Բարեպաշտ ինքնակալ կեսար Կոստանդին առ Տրդատ թագավոր Հայոց մեծաց՝ ի Տեր խնդալ։ Մեր սիրելիներին և եղբայրներին պատահած բարիքների առթիվ մենք զգացված ենք և շատ ուրախացած։ Մենք լսել ենք քո մասին, ով ազնվազույնդ, որ դու, երբ դեռ մոլորության մեջ էիր, սպանեցիր մեր Հռոմ քաղաքից, Դիոկղետիանոսի ձեռքից փախած կույսերին, որ ոմն սուրբ Գրիգորի չարչարեցիր, որ կերպարանափոխվեցիր և այնուհետև պիղծ դավանանքից փրկվեցիր քո կողմից մահապատժի դատապարտվածի կողմից, որ բուժվելով նրա կողմից ճշմարիտ աստվածածանոթությունը սովորեցիր, իսկ նույն վկա Գրիգորին միանգամայն իրավացի Կեսարիա ուղարկեցիր՝ սրբազան Ղեոնդիոսի մոտ քահանայության պատիվն ստանալու համար, որի մասին վերջինս նամակով մեկ առ մեկ ձեզ հայտնեց։

176. «Անցյալում մենք էլ մոլորյալ էինք, մենք էլ հիվանդացանք ու երկյուղի մեջ ընկանք, ցանկացանք [փրկվել] և սուրբ ավազանի միջոցով արժանացանք բուժման։ Մեզ վերածնության սուրբ ավազանն առաջնորդեց սրբազնագույն եպիսկոպոս Սիղբեստրոսը։ Պատվական խաչը գտնելու համար մենք Երուսաղեմ սուրբ քաղաքն ուղարկեցինք մեր ամենաբարեպաշտ և քրիստոսասեր մորը։

177. «Մենք ուզում ենք ձեզ, ձեզ հետ միասին նաև սուրբ Գրիգորին տեսնել և ողջագուրել։ Թող նույն բանը ցանկանաս և դու՝ եղբայր իմ, որպեսզի մեր փափագն իրականանա։ Քանի հազար մեծամեծներով և իշխաններով, թիկնապահներով և քո բարության անհրաժեշտ սպասավորությամբ, որ ցանկանաս, շտապիր մեզ մոտ։ Մենք մեր նահանգներն ուղարկեցինք ձեր

[22] Բնագրում [illegible], Ըստ Գարիտի պետք է լինի [illegible]; ասպետի Documents· p. 164, 227—228, 429)։

ծախսերը հոգացողներին։ Ո՛ղջ լեր, ամենասիրելի եղբայրք»։

178. Այս կայսերական նամակն ստանալով և մեծ պատվով ու Բափորով ընդունելով ուղարկված դեսպաններին, (Տրդատ) հրամայեց իր հետ Հռոմ գնացողներին պատրաստվել։ Հայոց երկրում թողնելով սպարապետին, Տրդատ թագավորը ուրախությամբ և մեծ հանդույքով շտապեց Դարանաղի, սուրբ Գրիգորի մոտ։ Մտնելով քարայրը նա ցույց տվեց նրան ստացված նամակը։ Նրան հրավիրում էին և՛ Հռոմի դեսպանները, և՛ Տրդատ թագավորը։ (Գրիգորը) համոզվելով նրանց խոսքերին, թագավորի հետ ճամփա ընկավ։

179. Նրանք պարզեցին թագավորական դրոշակները ինչպես և (թագավորին) հետևող կուսակալների և մեծամեծների (դրոշակները), հնչեցրին փողերը և զորաշարք կազմեցին՝ թագավորի ճանապարհորդելու առթիվ։ Գնացողների ընդհանուր թիվը շուրջ տասը հազար հոգի էր։ Նա չուզեց ավելի շատ մարդ իր հետ վերցնել, քանզի գնում էր մեծ կայսեր մոտ՝ նրա հրավերով, բայց ոչ էլ պակաս՝ իր թագավոր լինելու հանգամանքի պատճառով։

180. Յուրաքանչյուր քաղաքում և գյուղում նրան դիմավորում և ուղեկցում էին։ Նրանք շատ ուրախացան, երբ հասան Կեսարիա քաղաքը, երկրպագեցին սուրբ հայրապետ Ղևոնդիոսին, հայտնեցին իրենց ճանապարհորդության նպատակը։ Նրանց երեք օր չթողեցին գնալ և երեք օր անց դուրս եկան, փութալով Հռոմի կեսար Կոստանդինի մոտ։

181. Հասնելով Իտալիա, նրանց դիմավորեցին Հռոմի պատրիկները և հյուպատոսները և բազում սպասավորությամբ քաղաք մտցրին։ Կոստանդին կայսրն էլ ընդունեց (պատվիրակությունը), ողջագուրեց սուրբ Գրիգորին և Տրդատ թագավորին և երկուսին էլ հրավիրեց նստել կայսերական կառքի վրա։

182. Նրանք նախ և առաջ Հռոմի պատրիարք Եվսեբիոսի գլխավորությամբ աղոթեցին Պետրոս առաքյալի սուրբ եկեղեցում, որից հետո գնացին արքունիք։ Այդ օրը նրանք տոնախմբության մասնակցեցին, իսկ հաջորդ օրը Գրիգորն ու Տրդատը կեսարին նվերներ մատուցեցին, այն է՝ թագավորական բազմաթիվ երիվարներ, մարգարիտներ, սպասներ, թանկագին քարեր, և մետաքսաթել բազմաթիվ հանդերձներ։ Նրանք նվերներ մատուցեցին ոչ միայն կայսեր, այլև բոլոր պատրիկներին և մեծ իշխաններին, յուրաքանչյուրին պատվելով իրենց սեփական ամենաթանկագին (առարկաներով)։

183. Կեսարը այնուհետև ցանկացավ իմանալ դեպքերի մասին։ Պատմում էր Տրդատ թագավորը հռոմեական և հունարեն լեզվով, սկիզբ առնելով նրանց զորավար Լիկիանոսի մոտ իր ստացած կրթությունից, ապա թե ինչպես ժառանգելով հոր թագավորությունը Հռոմից եկավ հայրենիք, թե ինչպես դաշնակցելով հռոմայեցիների հետ հալածական արեց պարսից արքային և տիրեց Մեծ Հայքին, ինչպես սին աստվածներին զոհ էր մատուցում, ինչպես Գրիգորը չէր ուզում հաղորդակից լինել իրենց պիղծ դավանանքին, որ բազում պատիժներ կրելով, հաստատուն մնաց քրիստոնեական հավատքի մեջ, որ այդպիսով նա ստացավ ամենադաժան մահավճիռ՝ վիրապը նետվել, որտեղ այլ չարագործներ նետվելով, վիրապում գտնվող թունավոր օձերի սարսափից մի ժամ անգամ չապրեցին։ «Սրան, որ դուք տեսնում եք, տասնհինգ տարի պահպանեց Քրիստոս, որպեսզի մենք փրկվենք։

184. «Այնուհետև Հռիփսիմեն և Գայանեն ուրիշ կույսերի հետ փախան հայոց երկիրը։ Մենք այդ մասին չգիտեինք, այդ մեզ հայտնեց կեսար Դիոկղետիանոսը։ Մենք նրանց ձերբակալեցինք, բայց որովհետև չենթարկվեցին մեզ, սպանեցինք նրանց։

185. «Բայց այնուհետև մենք պատժվեցինք դևերի ձեռքով. ես կորցրի իմ մարդկային կերպարանքը և վայրի տեղերում ու եղեգնուտներում էի բնակվում, փախչելով իմ թագավորական ապարանքից։ Ուրիշները պատառոտում էին իրենց հանդերձները և ատամներով իրենց մարմինն էին կծոտում։

186. «Բայց ճշմարիտ Աստվածը, որի մասին իմացանք, որ վերջ ի վերջո չի զայրանում, այլ ուզում է, որ իր ձեռքերի ստեղծագործությունը փրկվի, երևաց իմ հարազատ քրոջս երազում լույս հրեշտակի միջոցով և ասաց նրան, թե մինչև որ Գրիգորին վիրապից չհանենք և՛ թագավորը, և՛ մյուսները չեն փրկվի։ Բոլորն անհավանական գտան, որ (Գրիգորը) կարող է դեռ ողջ լինել, դրա համար երկրորդ անգամ տեսիլքը երևաց և մենք հավատացինք և նրան (վիրապից) հանելով, մեզ մոտ բերեցինք։

187. «Նա աղոթքով, պասով և (Աստծուն) պաղատելով բուժեց մեզ հանուն սուրբ Երրորդության և կռապաշտության մոլորությունից մեզ ճշմարիտ աստվածածանոթության բերեց։ Նա կործանեց մեր տաճարները։ Սուրբը բազում հրաշքներ գործեց։ Երբ կործանվում էին կուռքերը, դևերը մարտի դուրս եկան, իսկ սուրբը խաչի նշանով պարտության էր մատնում նրանց թույլ ուժը։

188. «Նա մեզ բոլորիս առաջնորդեց և մենք փափագ ունեցանք, որ նա մեր հովիվը դառնա։ Նա հրաժարվեց, երբ ինձ անարժանիս երևաց հրեշտակը լույսով, ասելով ետ չկանգնել իմ մտադրությունից։ Հրեշտակը նրան էլ երևաց և ասաց չմերժել մեր խնդրանքը։ Ահա, արժանանալով այդ բանին ձեր հրամանի համաձայն մենք ժամանեցինք այստեղ»։ Մեծ կայսր Կոստանդինը լսելով այդ և շատ այլ բաներ ապշեց, ինչպես և մեծ Հռոմի ամբողջ ծերակույտը։

189. Մեծ Կոստանդինը ես իր հերթին պատմեց իր նախկին վիճակի մասին, ապա տեսիլքի, պատվական խաչի հաղթանակի մասին և սիրալիր կերպով բազում օրեր հյուրընկալեց սուրբ Գրիգորին և Մեծ Հայքի թագավորին։ Նա բազում նվերներ տվեց նրանց, թագավորին՝ ոսկե սպասներ, հանդերձներ, ոսկեթել կտորից պատրաստած թագավորական պատմուճան, իսկ սուրբ Գրիգորին՝ եկեղեցիների և վկայարանների ոսկե և արծաթե սպասք, նմանապես և մեծամեծներին՝ արծաթե սպասներ և մետաքսե կերպասներ։

190. Նա առավել ես ամրապնդեց նախկինում կնքված պայմանադիրը և ճանապարհեց, շատ մեծ դժվարու-

թյամբ բաժանվելով նրկուսից։ Ամեն ինչ կատարվեց այն կարգով ինչպես եղել էր դալստյան ժամանակ։ Անցնելով մեծ ծովը նրանք պտտանցվեց երկրի վրայով հասան Մեծ Հայք։ Բոլոր եկեղեցիներում տոնակատարություններ կատարվեցին և յուրաքանչյուր ռիպտիրոնի[23] մեջ տալիս էին մեծ կայսր Կոստանդինի, նրա քրիստոսասեր մոր Հեղինեի անունը, որպեսզի անարատ հաղորդության սուրբ խորհրդում նրանց հիշատակը հավերժ լինի։ Յուրաքանչյուր քաղաքում և գյուղում տոնակատարություններ կատարելուց հետո, նրանք եկեղեցիներին բաժանեցին Հռոմից բերած սպասքը։

191. Տրդատ թագավորը անընդհատ պարապում էր աստվածաշունչ գրքերով, աշակերտելով սուրբ Գրիգորին։ Նա միշտ բարեպաշտ կյանք էր վարում։ Յուրաքանչյուր մեծ գյուղում առանձնացնում էր հինգ այսպես կոչված հող երդո[24], փոքր (գյուղերում) երեք, որպեսզի նշանակված քահանաները (միջոցներ) ունենան եկեղեցիների վերականգնման և իրենց ապրուստի համար։

192. Մեծ Հայքի արքեպիսկոպոս սուրբ Գրիգորը տեսնելով, որ բոլորը համանուն դարձան՝ ամրապնդվելով քրիստոնյաների հավատքի մեջ, նորից հեռացավ Մանյա այրքը և շարունակեց աղոթել ու աղերսել։

193. Որոշ ժամանակ թագավորը իր մոտ ունենալով սրբազան Արիստակեսին ոչ մի բանի չէր դիմում։ Ապա նա նորից փնտրեց վկա և հայրապետ Գրիգորին, փափագեց իմանալ և իմացավ նրա տեղը և հասնելով այնտեղ խնդրեց նրան իր հետ լինել։ Նա մերժեց այդ, ասելով. «Ո՛վ թագավոր, երբ ես դեռ երկյուղի մեջ էի, թե հանկարծ դուք կհեռանաք ձեզ ավանդված հավատքից, լավ է որ ես ձեզ հետ էի, բայց այժմ շնորհիվ Քրիստոսի դուք կատարյալ քրիստոնյաներ եք, բարեպաշտ, սովորել եք քրիստոնյաների բարի ուսմունքը, դու էլ շատ առաքինի կյանք ես վարում, դրա համար ճիշտն այն է, որ ես այժմ ինձնով զբաղվեմ, քանզի ծեր եմ և հիվանդ»։

194. Թագավորը շատ աղաչեց, բայց երբ իրեն չհաջողվեց համոզել նրան, խնդրեց որ իր մոտ դան նրա որդիները՝ Արիստակեսն ու Վրթանեսը։ (Գրիգորը) թույլ տվեց այդ անել. նա նամակ գրեց ու հրամայեց (որդիներին) գալ, որից հետո թողեց թագավորին գնալ՝ բազմիցս աղոթելով նրա և ամբողջ ժողովրդի համար։

195. Թագավորը մեծ շտապողականությամբ իր մեծամեծներից երեք հոգու ուղարկեց Կեսարիա բազարը՝ սրբազաններ Արիստակեսի և Վրթանեսի հետևից, նամակ գրելով նաև կապադովկացվոց հայրապետ սուրբ Ղեոնդիոսին։

196. Մեծամեծները, գալով Կեսարիա քաղաքը և ներկայացնելով թագավորի նամակը, իրենց հետ մի քանի մարդ վերցրին սրբազան այրերին փնտրելու համար։ Նրանք գտան կրտսերին՝ Վրթանեսին և հարցրեցին Արիստակեսի մասին։ Նա ասաց, որ անապատում ճգնում էր։ Նրանք հասան այդ վայրը, բայց (Արիստակեսը) չէր ուզում այնտեղից հեռանալ։

197. Կեսարիայի բազմաթիվ քաղաքացիք և հայրապետի կողմից ուղարկված մարդիկ խոհեմ խոսքերով համոզեցին և իրենց հետ վերցրին սրբազան Արիստակեսին։ Վերցնելով (Ղեոնդիոսի) պատասխան նամակը, մեծամեծները սրբազան այրեր Արիստակեսի և Վրթանեսի հետ ճամփա ընկան։

198. Նրանց Դարանաղյաց գավառը հասնելը թագավորն իմացավ և մեծ ուրախությամբ ընդունեց, նամանավանդ, երբ լսեց նրանց կենցաղավարության մասին, և փութաց դեպի [Արիստակեսի և Վրթանեսի] սուրբ հայրը և իր ուսուցիչն ու հայրապետը։ (Թագավորը Գրիգորին) խնդրեց, որ Արիստակեսը ըստ ժառանգության կարգի գրավի իր տեղը առաքելական աթոռի վրա։ Արիստակեսը իր առաքինությամբ և վարդապետությամբ գերազանցեց հորը։ Նա անդադար քարոզում էր ժողովրդին (.. ..)։

199. Իմ այս ամբողջ շարադրանքը ճշմարիտ է, քանզի ես դեպքերի մի մասի մասնակիցն եմ և ականատեսը[25]։ Մյուսների մասին լսել եմ վստահելի մարդկանցից (Շարադրեցի), որպեսզի մեզանից հետո եկողները տեղի ունեցած բարի և առաքինի գործերով սովորեն բարեպաշտություն, որպեսզի մենք կենդանի Աստծուն հաճելի լինենք։ Քանզի նրան է փառքն ու իշխանությունը՝ հավիտյանս հավիտենից. ամեն։

---

[23] Բնագրում [illegible] Հայկական պատարագում սարկավագը հիշում է «Թագաւորաց հաստատեցելոց սրբոց Արդարոյ Կոստանդիանոսի Տրդատայ և Թեոդոսի և ամենայն սուրբ և բարեպաշտ թագաւորաց և աստուածասէր իշխանաց եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս աղաչեմք»։ Սա հայկական պատարագի «յիշատակաց»-ն է (Տես՝ Գաթրճեան, Սրբազան պատարագամատոյցք Հայոց, Վիեննա, 1897, էջ 102), որն արտասանվում էր որպես «Յիշատակք կենդանեաց և մեռելոց» Documents, p. 139)։

[24] Բնագրում [illegible] «տանուտերություն»։ Արաբական Վարքի մեջ այս բառը աղավաղված է։

---

[25] Նման վերջաբան ունի նաև Հայկական Ագաթանգեղոսը, որի խմբագիրը իրեն համարում է բոլոր դեպքերի ականատես. «այլ որոց մեզ են իսկ ականատեսք եղեալ...», այնինչ Վարքի խմբագիրը ինքն իրեն համարում է մի մասի մասնակից և ականատես Documents, p. 332)։ Նույնը կրկնում է նաև արաբական Վարքը. «Գրեցի եւ դայս ստուգիւ է զի ես ինքն վկայ և ականատես եղէ և է զի լուայ ի հաւատարիմ արանց» (Մկրտութիւն, էջ 82)։